# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 8 • 89



*Հանձնված է արտադրության 01.06.89 թ.: Ստորագրված է տպագրության 15.08.89 թ.: ՎՖ 02291: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61132: Պատվեր՝ 781: Գինը՝ 15 կոպեկ:*
*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 01.06.89 г. Подписано к печати 15.08.89 г. Формат 70×100 1/16 ВФ 02291. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61132. Заказ 781. Цена 15 коп.
**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

Շապիկի 1-ին էջին՝ ԱՐՏՈ ՉԱՔՄԱՔՉՅԱՆ. «ՀԱՅԿԱԿԱՆ ՍՅՈՒՆՔ»

Ես ուզում եմ պատմել մեկ մարզի, նրա մեկ քաղաքի մի քանի օրվա մասին, որովհետև վստահ եմ՝ նույնը տեղի է ունեցել բոլոր մարզերի ու հանրապետությունների քաղաքներում:

Մեր ողջ երկրում:

Կալուգան ու Հայաստանն առաջին հայացքից շատ տարբեր են: Միակ նմանությունը թերևս այն է, որ այնտեղ, ինչպես Հայաստանում, ծնողներն առավոտ շուտ աշխատանքի են գնում, աշակերտները՝ դպրոց, ավելի փոքրերը՝ մսուր ու մանկապարտեզ: Անցյալ տարվա դեկտեմբերի յոթն էլ այդպես սկսվեց: Բայց Կալուգա քաղաքի հիսուն դպրոցների աշակերտները, երբ դասերից տուն վերադարձան, ճաշեցին, հանգստացան, չընհացրին բակ իջնել: Անսպասելիորեն հեռուստացույցի հաղորդումն ընդհատվեց և տեսաափյուռին հայտնվեցին ավերված քաղաքներ, ճզմված մարմիններ, սարսափից սփրթնած դեմքեր: Դա շարժանկարային հնարանք չէր, այդ ամենն ընդամենը մի քանի ժամ առաջ տեղի էր ունեցել Հայաստանում: Գիշերը Կալուգայի դպրոցականները դասագրքի փոխարեն հանրագիտարաններ, քարտեզագրքեր էին թերթում, և հեռավոր հայկական հանրապետությունը անձկատ մոտենում, դառնում էր թանկ, հարազատ:

Հաջորդ օրը, սովորական ժամին, սովորականի պես ղողանջեցին դպրոցների զանգերը, բայց ոչ մի աշակերտ դասարան չմտավ: Երրորդ միջնակարգ դպրոցում, որը գոյություն ուներ արդեն 120 տարի, նման անսովոր իրադրություն չէր եղել: Դպրոցական զանգի հետ մեկտեղ հնչեցին շեփորականչերը, և ավագ ջոկատավար Մարիա Կուզմինան դժվարությամբ հաղթահարելով հուզմունքը, հրահանգեց.

— Դրուժինա, դեպի դահլիճ՝ սգո տողանի, քայլո՛վ մա՛րշ:

Ծանոթ աստիճաններով աշակերտները բարձրանում էին լուռ, գլխահակ, նրանք կանգ առան միայն այն ժամանակ, երբ դահլիճի պատին նկատեցին գերմաներենի ուսուցչուհի Վալենտինա Վորոբիևայի տասներեք քառյականոց կոչբանաստեղծությունը, որի երկու տողը երդումի պես էր հնչում.

Հայաստան, մենք քո կողքին ենք,
Հայ եղբայրներ, հավետ ձեզ հետ ենք...





Կալուգայի № 3 միջն. դպրոցի մի խումբ աշակերտներ

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

# Բարության ուժը

Դպրոցի տնօրեն Յուրի Ցեմերժինսկուն զարմացրել էր երեխաների խուռն բազմությունը՝ 780 աշակերտից ոչ ոք բացակա չէր: Եկել էին մինչև անգամ նրանք, ովքեր բժշկի արտոնագիր ունեին: Նայելով նրանց լացակումած, հուզմունքից կարմրած աչքերին, տնօրենը ըստիպված եղավ գոտեպնդող բառեր որոնել:

— Սիրելի երեխաներ,— ասաց,— ծանր է հայ ժողովրդի վիշտը, մեր բոլորի վիշտը: Սակայն սուգով, արցունքով մենք ոչ մի հոգս չենք կարող թեթևացնել: Առաջարկում եմ անհապաղ հանգանակություն սկսել և ուսումնական արտադրամասում վաստակած մեր գումարի հետ ուղարկել տուժած շրջանների դպրոցականներին:

Դահլիճից հավանության բացականչություններ, նորանոր առաջարկություններ լսվեցին: Լուռ էր միայն երրորդ շարքում՝ պատուհանի մոտ նստած մի աղջիկ: Նրան դպրոցում բոլորն էին ճանաչում: Ճիշտ է, վեցերորդ դասարանցի Օքսաննա Կորմիլիցինան առանձնապես լավ չէր սովորում, բայց առաջինն էր արտադասարանական բոլոր միջոցառումների ժամանակ և երբեք թույլ չէր տալիս, որ դպրոցում կամ փողոցում տղաներն աղջիկներին նեղացնեն: Դա գիտեին անգամ բարձր դասարանցիներն ու խուսափում էին նրանից, աշխատում հետը վեճի չբռնվել: Ո՞ւմ հայտնի չէր՝ Օք-

սաննան «Դինամո» մարզընկերությունում ձյուդո է պարապում և երազում է միլիցիոներ դառնալ, որ Կալուգա քաղաքում կարգուկանոն լինի, երեխաներին վիրավորել ոչ ոք չհամարձակվի: Դահլիճից դուրս գալիս նա ներքուստ վիճում էր տնօրենի հետ, ապացուցում, որ մինչև իրենք այդ ամենը կազմակերպեն, ընրամբ Հայաստան ուղարկեն, անօթևան մնացած, քաղցած, հարյուրավոր, գուցե հազարավոր աղջիկներ ու տղաներ... Դասարանի մոտ նա պայուսակը վճռական տվեց ամենամոտ ընկերուհուն՝ Լենա Կոմիսարովային, շշնջաց.

— Դիր նստարանիս, ես հիմա կգամ...

Ու դուրս վազեց, կտրեց զբոսայգին, ամենակարճ ճանապարհով՝ Դարվինի անվան փողոցի զառիվերով սլացավ տուն: Մայրն աշխատանքից եկել, փոքր եղբորն ու քրոջն էր կերակրում:

— Մամ,— շտապելուց Օքսանան չէր կարողանում բառերն արտաբերել,—փող տուր:

— Ինչքա՞ն:

— Չգիտեմ:

— Բայց ինչքա՞ն է պետք:

Ամենամեծ գումարը, որ մինչ այդ առաքիչ մայրը տվել էր աղջկան, մեկ ռուբլի էր եղել...

— Մեկ ռուբլի, կարո՞ղ ես:

Տիկին Սվետլանան չհարցրեց էլ, թե ինչ պիտի անի դրամը, զգաց, դուստրը խոսելու ժամանակ չունի՝ այլապես առանց շնորհակալություն հայտնելու ձեռքից չէր խլի մետաղե ռուբլիանոցն ու փողոց չէր նետվի: Փոստում հայտարարություն էր փակցված, որ Հայաստան դրամ ուղարկողներն սպասարկվում են անհերթ, բայց հենց այդ բաժնում հրսկայական հերթ էր՝ շատերն էին ուզում օգնել հայ աղետյալներին: Բարեբախտաբար գանձապահ մորաքույրը չսպասեցրեց նրան, նույնիսկ անդորրագիր լըրացնելու ձևը սովորեցրեց: Նա երկար նայում էր տասներկու տարեկան աղջկա դեմքին ու չգիտեր ինչու սրբում էր արցունքները...

Երբ Օքսանան դպրոց մտավ, առաջին դասն արդեն ավարտվում էր: Նրա ուշանալու պատճառը ոչ ոք չիմացավ:

Այդ օրվան սպասում էին Կալուգայի բոլոր դպրոցականները, գիտեին՝ բարեգործական համերգի ողջ եկամուտը մանկական վերականգնման կենտրոնի շինարարության համար ուղարկվելու է Երևան: Ելույթ ունենալու ցանկություն հայտնել էին բոլոր երաժշտական, նըկարչական դպրոցների սաները, անգամ պատանի տիեզերագնացները: Այնուամենայնիվ, ամենամեծ անակնկալը թույլ լսող երեխաների դպրոցի պատվիրակության այցն էր: Համերգից քիչ առաջ նրանք բեմ բերին իրենց պատրաստած հեքիաթների հերոսների արձանիկներն ու ասացին.

— Մենք էլ ենք ուզում օգնել աղետի ենթարկված հայ երեխաներին:

Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանի Կալուգայի մասնաճյուղի շենքը, այն շքեղ շենքը, որը մի ժամանակ մարզի հոգևոր առաջնորդի աթոռանիստն է եղել, արագ լցվում էր:

Շքերթային համազգեստով պատանի տիեզերագնացները մուտքի մոտ դիմավորում էին հյուրերին, առաջնորդում դահլիճ: Տոմս չէր վաճառվում, յուրաքանչյուրն ըստ ցանկության դրամ էր նետում գանձարկղը: Երբ վերջապես դահլիճի լույսերը մարեցին, և արծաթափայլ զանգակներ ղողանջեցին, բեմ ելավ Հայաստանից ժամանած Արևիկ Ղուկասյանըն ու արտասանեց «Ես իմ անուշ Հայաստանին»: Հետո մոմի լույսի տակ իրար հաջորդեցին ջութակահարներն ու դաշնակահարները, երգչախմբերն ու գործիքային քառյակները: Դահլիճում ընդմիջման ժամանակ անգամ ոչ ոք տեղից չշարժվեց, որովհետև բեմ բերվեցին թույլ լսող երեխաների աշխատանքները, ու անուրդ սկսվեց: Անփորձ ձեռքերով ծեփված, գույնզգույն ներկված խաղալիքներին հանդիսատեսներն իրարից առաջ ընկնելով այնպիսի գներ էին առաջարկում, որ յուրաքանչյուրի բուն նըպատակը, ներքին մղումը շատ շուտ պարզ դարձավ...

Այդ անսովոր երեկոն եզրափակվեց Հայաստանից եկած մի ուրիշ աղջկա՝ Քրիստինե Նազարյանի «Քիչ ենք, բայց հայ ենք» ոտանավորի արտասանությամբ: Համերգավարն արդեն հրապարակել էր անուրդից գոյացած գումարի չափը, հայտարարել, որ երեկույթն ավարտված է, բայց բոլորը բուռն ծափերով նորից ու նորից բեմ էին կանչում հայ դպրոցականին, ասես մի անգամ ևս համոզվելու համար, որ նման լեզու, մըշակույթ, ոգի ունեցող ժողովրդին աշ-

խարհում ոչինչ չի կարող ընկճել: Նույնիսկ ամենաահավոր, աննախադեպ աղետը...

Կալուգայի երկաթուղային կայարանում այդքան շատ մարդ երբեք չէր եղել: Գնացքը մեկնելու էր ուշ երեկոյան, բայց առավոտից կառամատույցում շարժվելու տեղ չկար: Ամեն մեկը ջանում էր որևէ ձևով օգտակար լինել՝ ոմանք գործիքներն էին տեղավորում, ոմանք սնունդն ու տաք հագուստը, ոմանք էլ վերջին անգամ փորձարկում էին դաշտային խոհանոցը: Ու անընդհատ այս ու այն կողմից խորհուրդների տարափ էր տեղում.

— Տեսեք, հա՛, հիմակվանից ձեզ նախապատրաստեք դժվարությունների, հանգստյան տուն չեք գնում:

— Լավ կաշխատեք, էնպես կանեք, որ ձեր կառուցած տները մատով ցույց տան:

— Թե դժվարության հանդիպեք, իմաց արեք, իսկույն կհասնենք:

Հասավ մեկնելու ժամը: Քառասունյոթ երիտասարդ գնացք բարձրացան, մոտեցան այն վագոնի պատուհաններին, որի վրա խոշոր, գույնզգույն տառերով գրված էր. «Կալուգա—Ստեփանավան»: Մեկնողները երջանիկ էին և չէին կարողանում թաքցնել ժպիտները՝ երեք հարյուր թեկնածուից իրենց էր նման բախտ վիճակվել: Ի՞նչ դժվարություն ասես չըհաղթահարեցին նրանք, որպեսզի հասնեն իրենց նպատակին: Մարզի հայտնի, փորձված մասնագետների ղեկավարությամբ ջոկատը Ստեփանավանի Կույբիշև գյուղում կառուցելու էր երեսուն բնակելի տուն, դպրոց, հիվանդանոց, մանկապարտեզ՝ այնպես, որ ոչ մի երկրաշարժ չկարողանար սասանել:

Գնացքը վաղուց անհետացել էր ռուսական անտառի կանաչ, անվերջանալի կոհակների մեջ, բայց ճանապարհողները չէին ցրվում:

— Ի՞նչ եք քթներդ կախել,— հանկարծ ձայնեց վերջին պահին մերժվածներից մեկը,— մենք այստեղից էլ կարող ենք օգտակար լինել Հայաստանին, այստե՛ղ էլ անելու գործ շատ կա:

Իրոք, մի քանի օր անց մարզային թերթերը հաղորդեցին, որ կարճ ժամանակում Կալուգայից Հայաստան է ուղարկվել 1180 ծանրոց և չորս միլիոն ռուբլի դրամ, որից 285504 ռուբլին՝ անձնական խնայողություններից: Դրանից բացի 3012 հոգի արյուն են հանձնել, 768 հոգի ցանկություն հայտնել իրենց տանը հյուրընկալել մեկ, նույնիսկ մի քանի հայ ընտանիք:

1989 1989

4 МАРТА

БЛАГОТВОРИТЕЛЬНЫЙ
ВЕЧЕР

ДЕТИ КАЛУГИ—
ДЕТЯМ АРМЕНИИ

В ПРОГРАММЕ:

- Концерт учащихся детских музыкальных школ
- Выставка-продажа произведений юных художников — учащихся детской художественной школы и школы-интерната для слабослышащих

Բարեգործական երեկույթի ազդագիրը



Կալուգայի № 3 միջն. դպրոցի տնօրեն Յուրի Ցեմերժինսկին ընդունում է Երևանի № 9 միջն. դպրոցի հուշանվերը

Լուսանկարները՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԿՈՒԶԻՆԻ

Հիմա, երբ դուք կարդում եք այս տողերը, հիշատակված թվերն անընդհատ մեծանում են, որովհետև շարունակվում է Կալուգայի օգնությունը Հայաստանին: Ինչո՞ւ միայն Կալուգայի: Ես պատմեցի ռուսական մի մարզի մասին, բայց համոզված եմ, նույնը կարելի է պատմել մյուս մարզերի, հանրապետությունների, աշխարհի բոլոր այն երկրների մասին, ուր հավատում են բարության ուժին:



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



Թիթեռ, թիթեռ թռվռուն,
Ի՞նչ ես այդպես թռվռում,
Տես՝ ինչպես եմ տզտզում,
Իջիր՝ խաղանք պարտեզում:

ՄԱՆԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ
Երևան, № 180 միջն. դպրոց, 2-րդ դաս.



Լրացված երկյուղ...
ապրողների հոգեկան հույսը
րոպեն արատավորեց՝
իբրև
սիրո մայրամուտի
ամպաստվեր...



Լեռնացած եզերք,
ուր թպրտում է հորիզոնը անձև
սիրո մաշված օրով
(իր նետված մանկության իմաստը
նա բազմապատկել է
երիցս խղճով)...



Գոյության պահերը
որսում են կյանքի և մահվան հորձանքը
(հողը արթուն շնչառությամբ
անապարում է ակնթարթում),—
րոպեն փայլեց:



Ճրագները ծխում են իմ երակներում
բերելով քո տաք ապտակը
խավար:

ՄՀԵՐ ԱՐՇԱԿՅԱՆ
Մեղրի, գիշերօթիկ դպրոց



Դաշտերդ արյունով ներկեցին,
Քեզ Կարմիր Հայաստան ասացին,
Բարի ճամփեքդ սրով բացեցին
Ու Մասիս սարդ քեզնից զատեցին:
Ավերված երկիր, քո հեռվում
Սև հավքեր են թռչում երկնով,
Էն սև օրը սև թռչունը
Սլացավ քո սրտի միջով...

Դու իմ լուռ երկիր, իմ մայր Հայաստան,
Քեզ եմ ես նայում բոցավառ սրտով,
Քեզ եմ ես նայում կարոտած սրտով,
Քեզ եմ ես նայում պապանձված սրտով.
Դու ես իմ հոգին, մտքերս բարի,
Ես կյանքս կտամ քո նուրբ քնարին:

Դու տիրացել ես սև մի չար բախտի,
Ամպ ու մրրիկ է քո գլխի վերև,
Որ միշտ իջել են, իջել են ներքև,
Միշտ խեժացել են ու գրկել են քեզ,
Ու... լռություն է տիրել քո երկրում:

ՄԱՍԻՍ ՂՈՒՅՈՒՄՋՅԱՆ
Վրաց. ԽՍՀ, Բոգդանովկայի շրջ. գյուղ Փոկա,
8-րդ դասարան



ԺԻՐԱՅՐ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ, 10 տ.
ք. Երևան

# Փղո՜ց է...

ԴԱՎԻԹ ՍԱՐԳՍՅԱՆ



Արդեն երկար ժամանակ է Մուկուչիկն ու Լուսինեն նույն երազն են տեսնում: Միաժամանակ: Սկզբում այն սևուսպիտակ էր, փոքր էկրանով, հիմա գունավոր, լայնէկրան երազ է դարձել: Բայց ամենատարօրինակը ոչ թե այն է, որ նրանք հիշում և պատմում են այդ բազմասերիանոց երազի բոլոր մանրամասները, այլ այն, որ դրա պատճառով մենք հայտնվել ենք կղզու վրա, իսկական կղզու, որը բոլոր կողմերից շրջապատված է ջրով, ինչպես Ռոբինզոն Կրուզոն, միայն թե մենք չորսով ենք՝ Մուկուչիկը, Լուսինեն, մայրիկը և ես:

— Տիկնիկը լաց էր լինում,— երազն է վերհիշում Լուսինեն,— սոված էր: Տանն էլ եփելու բան չկար: Մի քանի օրվա ճաշ ունեի, տվեցի տիկնիկին. կերավ, վրայից, ինձանից թաքուն, սառը ջուր խմեց ու, խնդրեմ, հիվանդացավ: Ես ջերմաչափը դրեցի նրա թևատակը և գնացի բժիշկ Այբոլիտին կանչելու:

— Խելոք,— ընդհատում է նրան Մուկուչիկը,— չե՞ս հիշում, երկու սերիա առաջ Ալադինը նրան ջին դարձրեց և խցկեց շշի մեջ:

Նրանցից յուրաքանչյուրը պատմում է այն, ինչն իրեն ավելի է հետաքրքրում, ինչը տպավորիչ է տղայի կամ աղջկա համար:

— Թող խոսքս ավարտեմ,— նեղանում է քույրը:— Ես հենց նրան փնտրելու էլ գնացի: Անցա անտառներով և անապատներով, հարցրեցի բոլոր թռչուններին ու գազաններին Այբոլիտի մասին, նույնիսկ Կարմիր Գլխարկին ու «Դե, սպասիր» մուլտի նապաստակին հանդիպեցի, վերջապես հասա մի դաշտ, որի ծայրը չէր երևում: Սկզբում կարծեցի, թե Կոշկավոր կատվի դաշտերն են, բայց...

— Ինձ, ինձ չտեսա՞ր,— Մուկուչիկի շունչն անհամբերությունից և խոսք վերցնելու ցանկությունից ուղղակի կտրվում է: Նա անհանգիստ շուռումուռ է գալիս իր տեղում, սպասելով քրոջ պատասխանին:

— Տեսա, դու անապատում էիր, բարդու կատարին,— ասում է քույրն իմիջիայլոց, հասկացնելով, որ դա երկրորդական հանգամանք է իր պատմության մեջ:

Նրանց ամենօրյա պատմությունները ինձ հոգնեցրել են, իսկ մայրիկը պարզապես գերադասում է չլսել դրանք և, քանի որ լողալ լավ չգիտե, հագնում է փրկարար օղակն ու դուրս գալիս մայր ցամաք:

Երեխաների արկածներում ամենազարմանալին այն է, որ նրանց երազների բոլոր մանրամասները համընկնում են, և իրենք հաճախ, մասնակցելով երազներին, գտնվում են գործողությունների կենտրոնում:

— Իսկ առյուծին չտեսա՞ր,— Մուկուչիկի դեմքը խոժոռվել է, հոնքերը կիտվել են քթարմատի մոտ:

— Դե, մի խանգարիր,— դարձյալ նեղանում է Լուսինեն ու շարունակում:— Մեկ էլ ինչ տեսնեմ. ես հայտնվել եմ խմորեղենի արտում... Չորս կողմս բլիթներ, տորթեր, կարկանդակներ, չգիտես որը ուտես, որը թողնես...

— Էհ,— նեղանալու հերթը Մուկուչինն է: Լուսինեն խուսափում է առյուծի մասին խոսակցությունից, որը նշանակում է. կամ չի հիշում, կամ չի տեսել: Այստեղից էլ իրադրությունը սկսում է սրվել, մինչև որ քրոջ ու եղբոր միջև հայտարարվում է պատերազմ: Բայց դա հետո, իսկ առայժմ Մուկուչիկին հաջողվել է լռեցնել քրոջը և ձեռքը վերցնել խոսակցության թելը:— Հայրիկ, այն խելագար առյուծը փախել էր հոգեբուժական հիվանդանոցից և գոռում ու մռնչում էր, թե ինքը բժիշկ Այբոլիտն է: Ես նրան ասացի, որ եթե ինքը Այբոլիտը լիներ, հիմա շշի մեջ խցկված կլիներ: Նա բարկացավ, թե ես ինչպես եմ համարձակվում նման ձևով խոսել գազանների արքայի հետ, և ընկավ իմ ետևից: Ես էլ

վազեցի ու բարձրացա բարդու վրա:

— Չի կարող պատահել: Փչոց է:— Այլևս չդիմացա ես այդ անհասկանալի պատմությունների շիլաշփոթին:— Անապատում բարդի չկա...

Մուկուչիկը մի պահ զարմացած ինձ նայեց, իբր՝ «Ինչպե՞ս թե՝ չկա, եթե ես ինքս եմ բարձրացել նրա վրա», ապա լուրջ ասաց.

— Հայրիկ, եթե առյուծը քեզ հետապնդեր, դու ինքդ էլ երկար-բարակ մտածելու ժամանակ կունենայի՞ր, թե անապատում ինչ է աճում, ինչ չի աճում, ինչ կա, ինչ չկա: Կգնայիր ու անմիջապես կբարձրանայիր, ճի՞շտ է: Ես էլ գնացի ու բարձրացա:

Նրա դատողություններն այնքան անհերքելի էին, որ առաջին հայացքից թվում



Նկարը՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

էին խելքի մոտ բան, մանավանդ, որ ես նայում էի Լուսինեի կողմը, որը մեծավարի և վճռաբար գլխով հաստատում էր եղբոր ասածները: Բայց հետո իմ մեջ կասկած առաջացավ, թե ինչու պատմության շարունակությունը լսելիս նա մի տեսակ տարակուսանքով և մտազբաղ էր նայում Մուկուչիկին:

— Աղվեսի վկան իր պոչն է,— ասում եմ:— Ձեր այդ հիմար պատմությունները իմ այ այստեղս են հասել, խրվել ու մնացել,— և ցույց եմ տալիս կոկորդս: Մենք միասին անկողնուց իջնում ենք լաստի վրա, արձակում մահճակալի ոտքից կապված պարանը, որը խարիսխի դեր է կատարում, և թիավարում ննջասենյակից դուրս, դեպի մայրցամաք: Մինչդեռ Մուկուչիկն այդ ամբողջ ընթացքում չի լռում, նա շարունակում է պատմել, թե ինչպես է բարդու ճյուղերից հսկա ձմերուկներ քաղել և շպրտել առյուծի վրա, որը կրծում էր հաստ ծառաբնի կեղևը, թե ինչպես է առյուծն ատամը կոտրել և լաց եղել՝ տեսնելով իր արյունը...

Ափ հասնելով, ես հիշեցնում եմ նրանց, որ կիրակի օրվա երազը սուտ է, չի կատարվում, որ արյունն առավել ևս հաստատում է դրա անիրական և անիրագործելի լինելը... Բայց ո՞ւմ ես ասում: Երեխաներն իրար հերթ չեն տալիս. մերթ Մուկուչիկն է պատմում իր մղած կռիվների մասին, մերթ Լուսինեն՝ տիկնիկների, զգեստների և կարկանդակների: Եվ շարունակ ինձ հետապնդում է այն զգացողությունը, որ նրանց երազների միջև առաջացել է ինչ-որ անհամաձայնություն, ինչ-որ մշուշոտ բան... Եվ ահա թե ինչ. երազի նախորդ սերիայում, երբ կրիան անհավասար մարտում հերոսաբար պաշտպանվում էր իրեն քանակապես մի քանի հարյուր անգամ գերազանցող մորեխներից, երբ մորեխների օդային դեսանտը վայրէջք էր կատարել նրա պաշտպանական դիրքերում ու հարձակում էր նախապատրաստում թիկունքից, իսկ հետախուզական ջոկատն ուսումնասիրում էր կրիայի զրահի բաղադրությունը, հայտնվեց հաղորդավարն ու հայտարարեց. «Հաջորդ սերիան դուք

կարող եք դիտել վաղը, երեկոյան ժամը 8-ն անց 35 րոպեին»: Լուսինեն այդ մասին չիմացավ, որովհետև նրա երազում հաղորդավարի ձայնը կորավ, պատկերն աղավաղվեց, իսկ քիչ հետո, երբ ամեն ինչ պարզվեց, հաղորդավարը Լուսինեից ներողություն խնդրեց տեխնիկական անսարքությունների համար, որի մեղավորը ոչ թե ինքն էր, այլ Լուսինեի զգայունությունը, որի վրա ազդել էր Նևադայում թե Սեմիպալատինսկում, ժողովրդական տնտեսության զարգացման նպատակով, տեղի ունեցած պայթեցումը: Լուսինեն հուզված էր, նա այդպես էլ չիմացավ հաջորդ սերիայի ժամը. «Բարի գիշերից» առաջ է լինելու, թե հետո: Եվ այդպես էլ բաց թողեց հաջորդ սերիայի սկիզբը, ավելի ճիշտ՝ ամբողջ առաջին կեսը, երբ խմորեղենի արտում հայտնաբերվում էր ստորգետնյա գաղտնի մի մեծ թռչնարան, որտեղ թռչունները կթում էին իրար և «ծտի կաթ» շոկոլադը պատրաստում: Այդտեղ էր ծերունի Խոտտաբիչը թաքցրել խեղճ Այբոլիտին, որին Լուսինեի փոխարեն ազատում է Մուկուչիկը և խնդրում բուժել քրոջ տիկնիկին: Լուսինեն երազը տեսնում է կեսից և չընայած եղբոր ասպետական քայլին, այստեղ է, որ քրոջ ու եղբոր միջև իրադրության լարվածությունը հասնում է գագաթնակետին, և առավոտյան մեր ննջարանը վերածվում է երկրագնդի ամենաթեժ կետի: Իրավիճակն իր շիկացմամբ գերազանցում է իրանա-իրաքյան հարաբերությունները, ի հայտ են գալիս ձեռնամարտի և հրդեհի բոլոր նախանշանները, և ննջասենյակը սկսում է դառնադաղ ծխալ: Փրկությանն է հասնում հորդառատ անձրևը, որը տեղում է...ննջասենյակի կենտրոնում: Բայց քանի որ ջերմաստիճանը ներքևում շատ բարձր էր, անձրևը գոլորշանում էր անկողին չհասած: Մինչև ես կբարձրանայի վերևի հարևանի տուն՝ խնդրելու, որպեսզի ամուր փակեն ջրի ծորակները, գոլորշին հասնելով առաստաղին կազմում է կարկտաբեր ամպեր, որոնք թեթև միջանցահովիկից բախվում են իրար, կայծակ ու որոտ է պայթում, և դա շարունակվում է այնքան, որ հատակին առաջանում են խոր լճեր: Քանի որ Մուկուչիկի պահվածքն ու դիրքորոշումը այնուամենայնիվ սխալ էին (նա պարտավոր էր քրոջից չթաքցնել երազի սկսվելու ժամը), և բանակցությունների սեղանի շուրջը զիջում էր Լուսինեին հատկապես մարդու իրավունքների ոտնահարման առումով, նա դիմում է դրսի զինված ուժերի օգնությանը, հրավիրելով ծանոթ տանկային շարասյան հրամանատարին: Երբ ես իջա վերևի հարկից, շենքն արդեն շրջապատված էր տանկերով, որոնք իրենց թնդանոթներն ուղղել էին մեր տան վրա, իսկ հրամանատարական տանկը, փուչիկից թելերով կախված, գտնվում էր անմիջապես մեր՝ յոթերորդ հարկի ննջասենյակի պատուհանի առջև:



—Հանձնվեցե՛ք,—ասաց հրամանատարը բարձրախոսով,—դուք շրջապատված եք: Դիմադրել՝ կնշանակի ավելորդ արյուն հեղել: Տալիս եմ ձեզ հինգ րոպե ժամանակ, որից հետո առանց նախազգուշացման, բոլոր կողմերից կրակ կբացեմ...

Ես անմիջապես, իսկական գերուն վայել, ձեռքերս վեր բարձրացրի, բայց Լուսինեն գերադասում է մարտնչել մինչև վերջ՝ պաշտպանելով իր տարրական իրավունքները: Չէ՞ որ նա արդար էր և նախընտրում էր նույնիսկ հերոսաբար զոհվել հանուն ճշմարտության:

— Ոչ,— հրաժարվեց նա:— Եթե դուք հենց հիմա չհեռանաք մեր տարածքից, ես այ սրանով կծակծկեմ բոլորիդ հետույքները:— Եվ ցույց տվեց, չէ, և նրա ձեռքում փայլատակեց մայրիկի վերմակ կարելու մեծ ասեղը:

Ես սարսուռով և, ինչ թաքցնեմ, փշաքաղված, սպասում էի, որ ուր-որ է կըթնդան խլացուցիչ որոտները, և մեր շենքըն ավերակների կույտի կվերածվի, բայց, ով զարմանք, հրամանատարը, չեմ

հիշում, լուսացույցի որ գույնի հրթիռ արձակեց, և բոլոր տանկերը անմիջապես նահանջեցին: Մենք շատ բարկացանք Մուկուչիկի վրա, որ առաջին իսկ առիթով դիմել է դրսի միջամտությանը, խառնելով նրանց մեր տան, մեր ընտանիքի ներքին գործերին: Գորտերը ուրախ կոկռացին նրանց հետևից: Զկնիկները դուրս եկան լճերից և գույնզգույն լողազգեստներ հագած, հանգիստ արևկող արին լուսամուտի գոգին: Այսպես ձախողվեցին Մուկուչիկի վճռական գործողությունները:

Մեր ռոբինզոնյան կյանքը դեռ երկար կշարունակվեր, բայց հայտնվեց հաղորդավարը և հայտնեց.

— Դուք դիտում եք «Մուկուչիկը, Լուսինեն և ուրիշները» բազմասերիանոց երազը: Հաջորդ սերիան կարող եք դիտել վաղը, ժամը...

Երեխաները լսեցին մինչև վերջ և տարակուսանքով իրար նայեցին:

— Փչոց է,— միաբերան ասացին նրանք:

Նրանց երազները միշտ համընկնում էին, իսկ իմը՝ դարձյալ ոչ:

Մուկուչիկը մի բաժակ ջուր բերեց և մեկնեց ինձ.

— Խմիր, հայրիկ, խմիր, թող այդ պատմությունները, որ խրվել են կոկորդդ և մնացել, կուլ գնան,— ասաց:

Ես դատարկեցի բաժակի ամբողջ պարունակությունը և պաշեցի, դրանք իսկապես կուլ գնացին:

—Որ ասում էինք փչո՞ց է,—լուրջ-լուրջ ասացին նրանք, և մենք սկսեցինք դուրս քշել առաստաղին կպած ամպերն ու դույլերով դատարկել հատակին գոյացած լճերի ջուրը:

Ես երկար մտածեցի, թե այդ ինչպես է, որ իմ երազները փչոց են, իսկ իրենցը՝ ոչ, իրենցը՝ իսկական ճշմարտություն, և որոշեցի մոտորային նավակ գնել: Ո՞վ գիտե, որն է փչոց, որը՝ ոչ: Այսօր փչոց է, վաղը՝ գուցե իրականություն: Հիմա մեր բարձրահարկի տանիքում կանգնած է իմ մոտորային նավակը, սպիտակ դրոշակը առագաստի վերևում ամրացված, ասում են՝ կարող է նոր ջրհեղեղ լինել, հանկարծ ու վերադասը որոշում ընդունի, որ ես նշանակված եմ Նոյի պաշտոնում... Սպիտակ դրոշակն էլ, այնուամենայնիվ, անվտանգության և ապահովության համար է: Հանկարծ ու մի ուրիշ Նոյ էլ հայտնվի: Հը՞...






Նա մութ արվարձանով ոտ-ոտ առաջ էր գնում: Իրարից հեռու ընկած տները գետնից վեր էին ձգվում: Լուսին չկար: Սալահատակը վախեցած էր տարաժամ ոտնաձայներից: Նա հին ցանկապատ գտավ: Քացով այնքան խփեց, մինչև ձողերից մեկը խարխուլ հառաչ արձակելով պոկվեց: Ցեցկերած փայտից դուրեկան հոտ եկավ: Նա մութ արվարձանում խարխափելով՝ հետ դարձավ: Աստղերը չէին երևում:

Երբ դուռը բացեց (բացվելիս լաց եղավ, դուռը լաց եղավ) կնոջ բաց-կապույտ աչքերը նրա կողմն էին նայում: Հոգնած դեմքի խորքից էին նայում: Կրնոջ ճերմակ շնչառությունը կախվել էր սենյակում. այնքան որ ցուրտ էր: Նա ծալեց ոսկրոտ ծունկն ու կոտրեց փայտը: Փայտը հառաչ արձակեց: Ցեցկերած փայտի դուրեկան հոտը տարածվեց սենյակում: Նա կտորներից մեկը մոտեցրեց քթին:

— Կարկանդակի հոտ ունի:— Ցածրաձայն ծիծաղեց նա:

— Սսսս:— Զգուշացրին կնոջ աչքերը:— Մի ծիծաղիր: Քնած է:

Ամուսինը փտած, հոտավետ փայտը թիթեղյա վառարանի մեջ դրեց: Քիչ անց

կրակ երևաց ու մի բուռ լիքը, տաք լույս ցոլաց սենյակում: Լույսն ընկավ կլոր, փոքր դեմքի վրա ու մնաց մի պահ: Ընդամենը մի ժամվա դեմք էր, բայց ինչ որ պետք էր, կար վրան. ականջներ, քիթ բերան, աչքեր: Աչքերը պետք է որ խոշոր լինեին. թեև փակ էին, բայց կարելի էր նկատել: Փոխարենը բերանն էր բաց, ու այնտեղից մեղմ փսսոց էր լսվում: Քիթըն ու ականջները կարմիր էին:

— Կապրի:— Մտածեց մայրը: Փոքրիկը քնած էր:

— Այստեղ վարսակաձավարի ձողիկներ էլ կան:— Ասաց ամուսինը:

— Լավ:— Պատասխանեց կինը:— Եղավ: Ցուրտ է:

Ամուսինը քաղցրահոտ, փխրուն փայտի նոր կտոր վերցրեց:

— Երեխա է ունեցել, մրսելիս կլինի:— Մտածեց նա, բայց մեկը չկար, որ դրա համար բռունցքները դեմքին իջներ: Երբ վառարանի դռնակը բացեց, լիաբուռ լույսը նորից ընկավ քնած դեմքին:

— Մի տես, ոնց որ լուսապսակ լինի:— Կամաց ասաց կինը:

— Լուսապսակ:— Մտածեց ամուսինը: Մեկը չկար, որ բռունցքները դեմքին իջներ:

Այդ պահին դռանն ինչ-որ մարդիկ հայտնվեցին:

— Պատուհանից լույս տեսանք:— Ասացին նրանք:— Ուզում ենք մի տասը րոպե նստել:

— Բայց մենք փոքր երեխա ունենք,— առակեց ամուսինը:— Ի պատասխան նրանք ոչինչ չասացին ու ոտքերը զգույշ բարձրացնելով, սենյակ մտան: Պնչներից գոլորշի էր բարձրանում:

— Աղմուկ չենք հանի:— Շշնջացին ու մոտեցան զգույշ: Լույսը նրանց վրա ընկավ:

Երեք հոգի էին: Երեք հնամաշ համազգեստով: Մեկի ձեռքում ստվարաթղթե թղթապանակ կար, մյուսի մոտ՝ պարկ: Երրորդը ձեռքեր չուներ:

— Ցուրտն է տարել:— Բացատրեց վերջինս ու բարձրացրեց թևերից մնացած մասերը: Նա տանտիրոջը ցույց տվեց վերարկուի գրպանը: Այնտեղ բարակ թուղթ ու ծխախոտ կար: Ծխախոտ փաթաթեցին, բայց կինը ասաց.

— Ոչ: Երեխա կա:

Նրանք դուրս ելան: Ծխախոտի կրակները չորս կետեր էին գիշերվա մեջ:

Մեկի ոտքերը հաստ փաթաթված էին:

Նա ձեռքի պարկից փայտի կտոր հանեց:

— Իշուկ է: Վրան յոթ ամիս եմ աշխատել: Երեխային կտաս:— Ասաց նա ու իշուկը տվեց տանտիրոջը:

— Ի՞նչ է եղել ոտքերիդ:

— Ջուր է հավաքվում: Սոված մնալուց է:

— Իսկ մյուսի՞ն՝ երրորդին:— Հարցրեց տանտերն ու մթության մեջ շոշափեց իշուկը: Երրորդը դողացնում էր համազգեստի մեջ:

— Ոչինչ:— Շշնջաց նա:— Ներվերս են: Վախենալու շատ բան եմ տեսել:

Հետո նրանք տրորեցին ծխախոտի մնացորդներն ու ներս մտան: Թաթերի վրա մոտեցան ու նայեցին քնածի փոքր դեմքին: Դողացողը թղթապանակից երկու դեղին կոնֆետ հանեց:

— Սրանք մայրիկի համար են:

Երբ երեք անծանոթներին երեխայի վրա խոնարհված տեսավ, կինը լայն բացեց բաց-կապույտ աչքերը: Վախեցավ: Սակայն փոքրիկն իր ոտիկները դեմ տվեց նրա կրծքին ու այնպես ուժեղ ճըղավեց, որ երեք անծանոթները ոտնաթաթերի վրա մոտեցան դռանը: Այստեղ նրանք մի անգամ էլ գլխով արեցին ու իջան-սուզվեցին մութի մեջ: Ամուսինը նայեց նրանց հետևից:

— Տարօրինակ սրբեր էին:— Կնոջն ասաց նա ու փակեց դուռը:— Լավ սըրբեր էին:— Փնթփնթաց նա ու նայեց վարսակաձավարի ձողիկների կողմը: Բռունցքներին նայելու սիրտ չուներ:

— Բայց երեխան ճչաց:— Շշնջաց կինը:— Լավ, ուժեղ ճչաց, ու նրանք գնացին: Մի տես՝ ինչ աշխույժ է:— Հպարտ ասաց նա: Փոքրիկը բացեց բերանն ու ճչաց:

— Լա՞ց է լինում:— Հարցրեց ամուսինը:

— Չէ: Երևի ծիծաղում է:— Պատասխանեց կինը:

— Իրոք, ոնց որ կարկանդակ լինի:— Ասաց ամուսինն ու հոտ քաշեց փայտից:— Իսկը կարկանդակ: Քաղցր հոտ ունի:

— Այսօր ծնունդ է ախր:

— Հա: Քրիստոսի ծնվելու օրն է:— Փնթփնթաց ամուսինը:

Վառարանից լիաբուռ լույս էր ընկել քուն մտածի փոքր դեմքին:

Գերմաներենից թարգմանեց

ՍԱՄՎԵԼ ՄԿՐՏՉՅԱՆԸ

# ՉԱՐ ԿԱԽԱՐԴԸ

(պատմության դաս)




**Մեր պապերի հեքիաթներից**
**Չար կախարդն այդ պեղեց-հանեց**
**«3» թիվը՝**
**Հեքիաթների վերջում հաճախ**
**Երկնքից ցած ընկնող երեք**
**Խնձորների,**
**Որպեսզի այս երկնքի տակ**
**Հեքիաթասաց էլ չլինի,**
**Էլ չլինի հեքիաթ լսող,**
**Ու ոչ էլ դասն այս ավանդող:**

**Մեր պապերի հեքիաթներից**
**Չար կախարդն այդ պեղեց-հանեց**
**«3» թիվը՝**
**Մեծ,**
**Միջնեկ,**
**Ու փոքր երեք եղբայրների,**
**Որ իր գերած**
**Ամմեն մարդկանց**
**Մի ազատող գեթ չլինի,**
**Իսկ թե լինի...**
**Նա այդ էլ էր հաշվի առել**
**Ու մեզանից խլեց նաև**
**«3» թիվը՝**
**Ծամփաբաժան կետից բացվող**
**Աջ,**
**Ձախ,**
**Ուղիղ,**
**Ձգվող երեք ճամփաների,**
**Ազատարար ասպետն ինչպե՞ս,**
**Ո՞նց տեղ հասնի:**
**Չար կախարդը**
**Մեր պապերի հեքիաթներից**
**Պեղեց-հանեց**
**Եվ «7» թիվը՝**
**Երազների ճամփան իրենց ուսին պահող**
**Յոթ սարերի,**
**Յոթ ձորերի,**
**Յոթ ծովերի,**
**Յոթ օր ու յոթ գիշեր տևող**
**Մեր եղբայրներ-քույրիկների**
**Հարսանեկան խնջույքների:**
**Պեղեց-հանեց,**
**Պեղեց-հանեց**
**Մեր սիրելի կենտ թվերն այդ,**
**Ներկեց արյամբ,**
**Հետո իրար կողքի դրեց՝**
**«37» թիվն ստեղծեց,**
**Որի մասին**
**Ու նաև այդ Չար կախարդի,**
**Հարկ է, որ մենք**
**Ու մեր բոլոր հետնորդները**
**Չմոռանանք հիշատակել**
**Մանուկներին մեր պատմելիք**
**հեքիաթներում...**
**... Եվ ամեն ոք թող իմանա,**
**Որ երկնքից ընկնող երեք խնձորներից**
**Կզրկվի նա,**
**Ու մեծ կյանքի դպրոցում էլ**
**Միշտ «երկու»-ներ նա կստանա,**
**Ով որ ամենն այս մոռանա:**



ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՋՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

# Հայ-պարսկական պատերազմները

Արշակ Երկրորդը, հետևելով «Հայաստանը մշտական բարեկամ ու թշնամի չունի» սկզբունքին, 350-ական թվականների սկզբում, Հռոմի առաջխաղացման ժամանակ, հարմար համարեց դաշնակցել Պարսկաստանի հետ ընդդեմ Հռոմի: Հռոմեական մի հսկա բանակ («ինչպես ավազը ծովի ափին», գրում է Փավստոսը) եկել էր Միջագետք, Մծբին քաղաքի մոտ ճակատամարտ տալու պարսիկներին: Շապուհ II-ը բանագնաց է ուղարկում Արշակ II-ի մոտ օգնություն խնդրելով: Արշակը նպատակահարմար է գտնում հռոմեացիների առաջխաղացումը կանգնեցնել, քանի որ պարսիկներին հաղթելուց հետո նրանք պետք է Հայքի դեմ ոտնձգություն անեին: Հայոց թագավորը հրամայում է Վասակ սպարապետին զորք պատրաստել: Վասակ Մամիկոնյանը հսկա բանակ է կազմում՝ «ընտիր ռազմիկ մարդկանցից, արիասիրտ կռվողներ, որոնք զինված էին նիզակներով, սրերով, աղեղներով, վաղրերով, սակրերով, անսխալ խփող և ուժեղ նետաձիգներ, ախոյանների առաջ տեղի չտվող կռվողներ, ամբողջ հեծելազորքը պահպանակներով զրահավորված, սաղավարտներով պաշտպանված, իրենց դրոշներով, նշաններով և բազմաձայն պատերազմական փողերով»,— գրում է Փավստոսը:

Արշակ թագավորի առաջնորդությամբ հայոց զորքը դուրս է գալիս Այրարատից, անցնում Մեծ Հայքի Աղձնիք հարավային աշխարհը և մտնում Միջագետք: Մծբին քաղաքի մոտ հայերը մեծ բանակ են դընում և սպասում պարսիկների գալուն, որպեսզի միասին հարձակվեն հույների (հռոմեական զորքերի) վրա:

Պարսից զորքն ուշանում էր: Հայ զինվորները սկսում են նեղվել անգործ մնալուց. «Նրանք մաշվում էին օտար աշխարհում պարապ նստելուց»,— գրում է Փավստոսը: Վասակ Մամիկոնյանն շտապում էր ճակատամարտ տալ հռոմեական բանակի դեմ, քանի դեռ հայոց բանակի մարտական ոգին բարձր էր: Բոլորը խնդրում են թագավորին իրավունք տալ ճակատամարտն սկսելու: Արշակը համաձայնվում է: «Այպ,— գրում է Փավըստոսը,— Վասկը՝ Մեծ Հայքի զորավարըն ու սպարապետը, կազմում, պատրաստում է հայոց ամբողջ զորքը: Նա սպառազինեց և սահմանված ժամանակին բոլոր իր պատերազմական զորքով՝ այրարատյան բանակով հարձակվեց հույների բանակի վրա: Բոլորին առհասարակ սրի անցկացրին, կոտորեցին, մի մարդ նրանցից կենդանի չթողին»:

Ծուտով պարսից զորքը գալիս է և տեսնում, որ հակառակորդը ջախջախված է:

Շապուհը, ինչպես գրում է Փավստոսը, որոշում է անհզելի սեր հաստատել հայոց Արշակ թագավորի հետ՝ նրան կնություն տալով իր դուստր և պարգևելով մի մեծ հողամաս Պարսկաստանում: Իսկ հայ զորականներին տալիս է մեծ նվերներ: Շապուհը հայերին հրավիրում է Պարսկաստանի մայրաքաղաք Տիզբոն՝

Արշակի և իր դստեր հարսանիքն անելու:

Բայց դա երկար ճանապարհ էր, իսկ ծանր ճակատամարտից հոգնած հայ զինվորը, ինչպես Փավստոսն է գրում, «հայ մարդու բնական սովորությամբ կարոտել էր իր տուն ու տեղին»:

Իհարկե, Արշակի Տիզբոն չգնալը նաև այլ պատճառ ուներ: Թագավորը զգուշանում էր խորամանկ ու նենգ Շապուհից, նա իր զորքով գնալով Պարսկաստանի մայրաքաղաք՝ կարող էր ծուղակի մեջ ընկնել:

Հայոց ամբողջ զորաբանակը մի գիշեր թողնելով իր վրանները, սարքերը, իրերը՝ գաղտնի հեռանում է բանակատեղիից, թողնում Միջագետքը ու մտնում Հայք:

Փավստոսը հայերի այս գաղտնի ու շտապ վերադարձը բացատրում է հետևյալով. սյունյաց նախարար Անդովկը դեմ էր, որ Արշակը մի նոր կին ունենա, այն էլ պարսից թագավորի դուստրին, որը կդառնար հայոց թագուհի, իսկ իր դուստրը Փառանձեմից կխլեր այդ պատիվը: Ըստ Փավստոսի, զանազան խորամանկություններով Անդովկը համոզում է Արշակին, թե Շապուհն ուզում է նրան ըսպանել, և իբր համոզվելով՝ Արշակը հրամայում է շտապ վերադառնալ Հայաստան: Գուցե և այս ամենը ճիշտ է. Փառանձեմից հայոց առաջին տիկնոջ իրավունքը խլելը Անդովկի ազդեցությունը հայոց արքունիքում կթուլացներ: Սակայն հայերի շտապ վերադարձի գլխավոր պատճառը դա չի եղել: Արշակ թագավորը, որպես հմուտ քաղաքագետ, գիտեր, որ հռոմեական զորքի ջախջախումով Հայաստանի համար հռոմեական վտանգը վերացած էր գոնե ինչ-որ ժամանակ: Իրական վտանգը դարձել էր Պարսկաստանը: Շապուհն ուզում էր իր դուստրին Արշակին կնության տալով Հայքն իր լիակատար ազդեցության տակ գցել: Իսկ Արշակը՝ Մեծ Հայքի անկախության այդ հզոր զորավիգը, մերժում էր նման որևէ ազդեցություն: Արշակն իր զորքով հեռացավ Միջագետքից՝ իմանալով, որ Շապուհի խարդավանքին չենթարկվելը կարող է հանգեցնել հայ-պարսկական պատերազմի, որին ճակատամարտը նոր ավարտած հայոց զորքը պատրաստ չէր:

Պարսկաստանի և Հռոմի միջև պատերազմական գործողությունները շարունակվում էին: Հակառակորդներից յուրաքանչյուրն աշխատում էր հայերին իր կողմը գրավել, քանի որ ում կողմը որ հայերն անցնում էին, այն կողմն էլ հաղթանակ էր տանում: Իսկ Արշակ II-ը աշխատում էր երկու կողմի հետ էլ լավ հարաբերություն պահպանել և առայժմ ոչ մեկին էլ օգնություն ցույց չտալ:

Երբ Շապուհի բազմաթիվ հորդորները, որ Արշակն իր դաշնակիցը լինի, ապարդյուն են անցնում, պարսից թագավորը որոշում է ուժ գործադրել: Նա խաղաղություն է կնքում Հռոմի հետ և Ատրպատականով հարձակվում Հայաստանի վրա:

Այդ ժամանակ Ատրպատականի մոտ կեսը միացված էր Մեծ Հայքին, պարսից և հայոց սահմանն անցնում էր Թավրիզից հարավ (այսինքն՝ Թավրիզը Հայաստանի մեջ էր): Հայ սահմանապահները պարսիկների հարձակման լուրը հասցնում են Արշակին: Սա հրամայում է Վասակ Մամիկոնյանին պատրաստվել պատերազմի: «Վասակը արագ մի տեղ է հավաքում զորքը,— գրում է Փավստոսը,— հայոց ամբողջ զորքին զորահանդես է կատարում: Դուրս է գալիս վաթսուն-բյուր (600 հազար) հեծյալ, լավ զինված նիզակավոր զինվոր, միասիրտ, միաբան, հավատարիմ մարդիկ»:

Հայկական զորքը շարժվում է դեպի հարավ, ճակատամարտ է տալիս պարսիկների բանակի դեմ և գլխովին ջախջախում այդ բանակը, ապա հայոց զորքը ավերում է պարսից շեները, գերում շատ զինվորների: Շապուհ թագավորը ձիով փախչում է և գլուխն ազատում:

Հայ-պարսկական հաջորդ ընդհարումը տեղի է ունենում երեք ճակատով: Հայոց զորքերի մի մասը գլխավորում էր թագավորը, մյուս մասը՝ Վասակ սպարապետը, երրորդը՝ Վասակի եղբայր Բագոս զորավարը: Երեք ճակատում էլ պարսկական զորքերը ջախջախվում են, սակայն Բագոս զորավարը զոհվում է: Փղերից կազմված պարսկական գնդի մեջ նա նշմարում է շքեղ զարդարված մի փիղ և կարծում, թե դրա վրա Շապուհն է նստած: Բագոսը մտնում է փղի տակ, որովայնից սրախողխող է անում նրան: Փիղն ընկնում է Բագոսի վրա, ու այդպես զոհվում է հայ հերոսը (իսկ փղի վրա Շապուհը չէր):

Վասպուրականի նախարար Մեհրուժան Արծրունին, որ դժգոհ էր Արշակու-

նիներից, անցնում է պարսիկների կողմը, ուրանում քրիստոնեությունը և ընդունում պարսից զրադաշտական կրոնը: Նա իր ծառայությունն է առաջարկում Շապուհին Հայաստանի վրա նոր հարձակում կատարելու գործում:

Երբ Արշակ II-ը հայոց զորքով գտնըվում էր Ատրպատականում և պատրաստ էր պարսից զորքի նոր հարձակմանը դիմագրավելու, Շապուհի զորքը նրան միացած Մեհրուժան Արծրունու հետ Հայաստան է մտնում Միջագետքից, անցնում Աղձնիքն ու Ծոփքը, մտնում Դարանաղյաց գավառը՝ ամենուրեք կոտորած ու ավեր անելով: Փավստոսն այս առթիվ գրում է. «Կրակի ու ավերածի էին մատնում երկիրը. անթիվ մարդիկ էին կոտորում իրենց սրերով, կանանց ու երեխաներին սայլերի ցցերի վրա էին հանում, մի մասին էլ կամերի տակ էին գցում, կալսել էին տալիս, տղամարդկանց բազմությունը գցում էին փղերի ոտքերի տակ կոխան լինելու և անթիվ քանակությամբ մանր երեխաների գերի էին տանում»: Ինչպես տեսնում ենք, պարսիկները Հայաստանում նույնն էին անում, ինչ որ դրանից շուրջ 1000 տարի առաջ կատարում էին Ասորեստանի զորքերը: Մարդկանց վայրագությունը 1000 տարվա ընթացքում նույնն էր մնացել: Պարսիկները ավերում են Հայաստանի մի շարք բերդեր ու քաղաքներ, այդ թվում՝ Տիգրանակերտը:

Որ բերդը որ չէին կարողանում գրավել, թողնում ու առաջ էին շարժվում: Նըրանք գրավեցին Դարանաղյաց Անի բերդը, որտեղ հայ թագավորների գերեզմաններն էին: Այդ գերեզմանները քանդեցին, թագավորների ոսկորները հանեցին (միայն Սանատրուկ թագավորի մեծ և ամուր գերեզմանը չեն կարողանում քանդել): Հայ թագավորների ոսկորները Շապուհը որպես գերի որոշում է տանել Պարսկաստան: Պարսիկներն ասել են. «Այն պատճառով ենք մենք հայոց թագավորների ոսկորները մեր աշխարհը տանում, որ այս աշխարհի թագավորների փառքը, բախտն ու քաջությունը այստեղից թագավորների ոսկորների հետ մեր աշխարհը փոխադրվեն»:

Երբ Արշակն իմանում է պարսիկների նենգ հարձակումը թիկունքից, անմիջապես իր զորքով շտապում է Մեծ Հայքի կենտրոնական շրջանը:

Վասակ Մամիկոնյանը Արշակ թագավորին զորքի որոշ մասի հետ թողնում է մի ապահով տեղում և մոտենում Այրարատ աշխարհում բանակած Շապուհի զորքերին: Նա գիշերով հարձակվում է պարսիկների վրա, գլխովին ջախջախում հակառակորդի ամբողջ բանակը, ազատում բազմահազար հայ գերիներին, որոնց տանելու էին Պարսկաստանի խորքը: Վասակը պարսիկներից խլում է նաև հայ թագավորների ոսկորները, որոնք հետո թաղել է տալիս Արագածի լանջին Աղձք գյուղում (մինչև հիմա էլ հայ թագավորների ոսկորներն այդտեղ են թաղված, հատուկ կառուցված դամբարանում): Շապուհը Մեհրուժանի հետ կարողանում է փախչել:

Վասակի այս փայլուն հաղթանակից հետո, Շապուհը միառժամանակ զգուշանում է Հայաստանի դեմ հարձակվել: Երկիրը խաղաղություն է վայելում:

Այդ ընթացքում Հռոմի Կոստանդիոս II-րդ կայսրը հակամարտության մեջ էր իր հորեղբոր որդի Հուլիանոսի հետ, որն ուզում էր կայսր դառնալ: Կոստանդիոսը պատրաստվում էր նաև Սասանյան Պարսկաստանի դեմ մի վճռական պատերազմ սկսել: Բայց 361 թ. Կիլիկիայում վախճանվեց տենդից: Թագավոր դարձավ Հուլիանոսը, որը քրիստոնեության թշնամին էր և դրա համար կոչվեց Հուլիանոս Ուրացող:

Ահա այս շրջանում էր, որ Արշակի կընոջը՝ թագուհի հույն Օլիմպիային թունավորում են հայոց արքունիքում: Հուլիանոսը սա իրավացիորեն համարում է ոտնձգություն հռոմեական շահերի դեմ և Արշակից պահանջում է հնազանդություն: Նա պահանջում է նաև Արշակ II-ից հայոց զորքով պատրաստ սպասել իր կարգադրությանը: Սակայն Արշակը դարձյալ խորամանկում է, շարունակում է հետևել հռոմեա-պարսկական պատերազմների ընթացքին, որպեսզի որոշի, թե ում կողմը պետք է անցնել: Երբ Հուլիանոսը լուր է ուղարկում Արշակին՝ զորք ուղարկել Մարաստանի կողմը, հռոմեական զորքերի հետ պարսիկների վրա հարձակվելու, Արշակը դանդաղում է այդ առաջարկը կատարել: Հուլիանոսի զորքը շրջապատում է պարսից մայրաքաղաք Տիզբոնը, բայց հայերից օգնություն չստանալով, չի կարողանում գրավել և նահանջում է: Արշակը շարունակում է դան-

դաղել հռոմեացիներին օգնություն ցույց տալ, թեև հայոց զորքերը պարսիկների հետ մի քանի ընդհարումներ են ունենում և հաղթում:

Հուլիանոս Ուրացողը հայերից օգնություն չստանալով արագ նահանջում է և ի վերջո սպանվում պարսիկ զինվորի նիզակով:

363 թ. Հռոմի (Բյուզանդիայի) կայսր է դառնում Հովիանոսը, որ մի տարի թագավորեց, բայց այդ տարվա ընթացքում հասցրեց Հայաստանին մեծ վնաս տալ: Նա 30 տարվա մի ամոթալի դաշինք կնքեց Պարսկաստանի հետ, որի կետերից մեկը քրիստոնյա Հայաստանին և Վրաստանին Հռոմի կողմից օգնություն ցույց չտալու պարտավորությունն էր: Միջագետքում նախկինում պարսիկներից գրավված գրեթե բոլոր հողերը վերադարձվում են Սասանյան Պարսկաստանին, որին իրավունք է տրվում նաև Մեծ Հայքից անջատել և Պարսկաստանին միացնել Աղձնիքը, Մոկքը և այլ գավառներ:

Արշակ թագավորին դավաճանում և Շապուհի կողմն է անցնում նաև Մամիկոնյան հզոր իշխան Վահանը: Վասակ Մամիկոնյանը թեև շատ դեպքերում համաձայն չէր Արշակ II-ի ներքին, հաճախ դաժան քաղաքականությանը, բայց հավատարիմ է մնում հայոց թագավորին՝ երկիրը վերահաս վտանգից պաշտպանելու համար: Եվ այդ չնայած այն բանին, որ պարսիկների կողմն անցած Մեհրուժան Արծրունին Վասակի քրոջ որդին էր, իսկ Վահան Մամիկոնյանը՝ հարազատ եղբայրը:

Հայ-պարսկական պատերազմների ամենակատաղի շրջանը տևեց շուրջ 4 տարի՝ 364—368 թվականներին: Հայոց զորքը Վասակի գլխավորությամբ հաղթանակ հաղթանակի հետևից էր տանում:

Արշակ II-ը դաշինք է կնքում հոների և ալանների (օսերի) հետ (հոները նս բնակվում էին Կովկասյան լեռներից դեպի հյուսիս, նրանք այժմյան հունգարացիների նախնիներն էին): Սրանց զորքերը հայկական մի հսկա զորաբանակին միացած ճակատամարտ են տալիս Հայաստանի վրա արշավող պարսից զորքին Ատրպատականի Թավրիզ (Թավրեզ) քաղաքի մոտ և խայտառակ պարտության մատնում Շապուհի զորաբանակին ու ասպատակում, ավերում Ատրպատականը, կոտորած սարքում, մեծ քանակությամբ գերիներ տանում Հայաստանի խորքը:

Շապուհը Հայաստան է ուղարկում իր Վին զորավարին՝ մեծ բանակով: Հայոց զորքը սրանց նույնպես ջախջախում է: Կենդանի մնացածները մի կերպ փախչում են:

Ապա Շապուհը Հայաստանի դեմ չորս ուրիշ զորաբանակներ է ուղարկում Անդիական, Հազարավուխտ, Դմավունդ Վընեմական և Վահրին զորավարների գլխավորությամբ: Վասակը հայոց զորքով ջախջախում ու հետ է շպրտում նաև Սասանյանների այս չորս բանակները: Նա սպանում է Հազարավուխտ, Դմավունդ և Վահրին պարսից զորավարներին:

Դրանից հետո պարսից Գումանդ Շապուհ զորավարը պարծենում է իր թագավորի՝ Շապուհ II-ի առաջ, թե ինքը կհպատակեցնի հայերին: Նա օգտվելով հայոց սահմանապահ գնդի անփութությունից, մտնում է Հայաստան և կրակ ու ավեր սփռում երկրում: Նրա հետ էր Մեհրուժան Արծրունին: Վասակ Մամիկոնյանը հայոց զորաբանակով վրա է հասնում և Գումանդի զորքն էլ է ջախջախում, կենդանի մնացածներին փախուստի մատնում, իրեն՝ Գումանդին սպանում:

Փավստոսը պատմում է, որ Հայքի վրա արշավել են նաև Դեհկան, Սուրեն Պահլավ, Ապական Վսեմական, Զիկ, Սուրեն Պարսիկ, Հրեվշողում, Ալանայոզան, Բոյեկան, Վաղական, Մշկան Մարունան, Զինդկապետ, Սակստան Անդերձապետ, Շապստան Տակառապետ, Մոգաց Հանդերձապետ, Համբարակապետ, Մոկան զորավարները պարսից մեծ զորքերով և բոլորն էլ պարտվել են Վասակի գլխավորած հայոց զորաբանակներից:

Հայերի այդ փառավոր հաղթանակների շնորհիվ Մեծ Հայքի ամբողջությունն ու անկախությունը պահպանվում էր: Հայաստանի համար շատ բարդ իրավիճակների մեջ հայոց Արշակ II թագավորը թե՛ ուժով, թե՛ բնությամբ, թե՛ զգուշավոր ու խորամանկ գործելակերպով հասնում էր իր նպատակին՝ պահպանում Հայաստանի ներքին միասնությունը, ետ մղում հռոմեական զորքերի և Պարսկաստանի բոլոր ոտնձգությունները հայոց նկատմամբ, անձեռնմխելի պահելով Մեծ Հայքի ամբողջությունը:

(շարունակելի)

Ինչքան լե ձգի հարգավոր էղնի,
Մըր հեսիրն ա՝ չմքի ասկյար ա, թայանչի,
Ընդրան լե դադ ու դատաստան գհասնի:

Անդրանիգ էդ հըմեն ըսեց, պրձավ,
Ուր Ասլան ձիու գլոխ դառծուձ, գնաց,
Թուրկ կնգտիգ արմանք-զարմանք կիշկեն ընդրան,
Տեսան, օր էրգնքուց
Պոծառ բան մի հիճավ ընդրա գլխուն
Լուս տվեց, մըլբ եդ-եդ գնաց,
Հեռու սարիմ վրեն Խալիլ կծկոտեր էր,
Խամճին քաշեր, կերտեր, գիկեր տուր թե կիդաս,
Գզարգեր ուր ասկրներուն, ամոտանք կիդեր,
Հըմա Անդրանիգի գլխու շոխկ օր տեսավ,
Բոռաց,— Անդրանիգ փաշեն էգավ, փախե՛ք,
ամա՜ն,—
Ու ընդրանք ձիանք քշին, փախան, գածին:
Թուրք, քուրտ ու աչամ կնշտին, պառգան
գեղնին,
Պագեցին Անդրանիգի ձիու հոտկի տգի հող,
Օրնաբանեցին, ըսին.— Անհախտ մնաս, զորավար,
Անմահ մնաս, սուրբ Անդրանիգ:

Խաբար թռավ, գնաց, հասավ Պոլիս,
Թռավ, գնաց, հասավ Բեռլին, Փարիզ,
Գնաց հասավ Թիֆլիս, Պեդրբուրգ,
Թռավ, գնաց, հասավ Իրան, Թուրան,
Ուրխծան Թավրիզ, Թեհրան,
Աշխարհկ լսեց հ՚իմցավ՝
Անդրանիգ ուր կամավորներով կդրե, հընցե
Արազ,
Զարգե, ջառտե Խալիլ փաշի կանոնավոր
բանագ,
էն լե խաբար ա խրգե Ստամբուլ,
Թե իմ վրեն մեգեն հուշում տվեց ուռուս խազախ,
Գնա հինգ հազար մառտով...
...Սուտ, գեդին լե չպադովեր,
Օր Խալիլ մդներ մեջ, Սուտ, էն լե էնքան մենծ,
Օր նա ըսվեր էր, նա մառտու մտկով գընցներ...
—Գեներալ Նազարբեգով Թիֆլիզ կնստեր,
Եպօր կարտաց Անդրանիգի հեռագիր,
Հէլավ պադից հիճուց ընդրա նգար, պագեց,
Ըսեց.— Մենք հ՚ըմենքսի կմեռնինք, կերտանք,
Դու անմահ կմնաս,
Քու մասին ժողովուրդը դըռ ինչե՞ր կըսա,
Դու մդար սրպերու շարք:
Նիգոլա թակավոր լե լսեց, հիմցավ,
Գեներալներուց մեգին թամխեց, ըսեց.
— Հըլա Անդրանիգի նգար բերեք,
Տեսնեմ, թե ի՞նչ մարտ ա,
Էդ ի՞նչ էղավ, օր էնի կոցավ Դիլման դրավել,





ալամաններ— գերմանացիներ
իդահեղ— այս անգամ
իզին—հրաման
գոտան— թուխս
ջախտ կիներ— շտապում էր
նադարոս— քարոզ
քոմվել— հավաքվել
փիլ— փիղ
ուրանց—իրենց
խանձեր—կանչել
բիրդանց—հանկարծակի
գինալ—գիտենալ
մգա—հիմա, հիմիկ
այան—հայտնի
վիր—ում
գոտան—թուխս
ջախտ անել—շտապեցնել, շտապել
մրունի—մեր
հմեն, հըմեստ—բոլորը, ամենքը
հերոսոդել—բարկանալ
զըմեն—բոլորը, ամենքը
ըդհըմալ—մինչև, մինչ
խամճի—մտրակ
հուդա—այստեղ
պադոռնդաշ—փամփշտակալ

նա՛... նա՛...—ո՛չ... ո՛չ
յարալու—վիրավոր
փոլիտիկա—քաղաքականություն
ասկ—ազգ
խազախ—կոզակ
բաբամ—հայր իմ
հեկիմ—բժիշկ
մեգէ—մյուս
անգդրել—լսել
հարթարափդան—չորեքկողմյան
հուստի՞ց—որտեղի՞ց
խառա—վստահ, ինքնավստահ
լուպ, լպեր—բուռ, բռներ

ԴԻԼՄԱՆԻ ՀԵՐՈՍԸ
(հայկական ժողովրդական վիպասք)


Խմբագիր՝ Թ. Վ. ՏՈՆՈՅԱՆ
Նկարիչ՝ Խ. Զ. ՀԱԿՈԲՅԱՆ
Գեղ. խմբագիր՝ Հ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Տեխ. խմբագիր՝ Շ. Կ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
Սրբագրիչ՝ Ա. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

«Պիոներ» ամսագրի խմբագրություն—1989 թ.

փրգուտենի համար,
Մենք մըր հողերն ա գուզինք պայինք,
Մըր տուն ու տեղ,
Ընձի ի՞նճ ա պետկ քու տված ազնվականութեն,
Ընձի պետկ չէ Սև ծովու ափերու կալվածքներ,
Էդ օր ընձի Գևորգյան խաճ ա կամեցե,
լավ էրե,
Հըմա ես ըդրա կարող չիմ,
Չէ, պարոն Չեռնոզ, չէ,
Դուք մզի լավ չըք ճանճնա,
Մենք նա՛ ապստամբ ինք, նա՛ հող զավտող,
Մենք ֆիդա ինք, հեղափոխական,
Պադասխան տվեց ու քաշեց ուր բլուզ հանեց,
Ընդոնե հեդն քաշեց, հանեց էրգտե շաբիգ,
Շաբգի ծալքերուծ շրխկալով գեդին թափան
Գնա հազար հադ գյուլլա,
Հ՛ըմեն լե լսեր էն, հըմա չըն տեսե,
Օր Անդրանիգ կռվուծ հեդն կհանա ուր շաբիգ,
Ուր վրից կթապա ուրին դիբուգ գյուլեքներ,
Լսեր են, օր ընդրան գնդակ չծագա,
Հըմա դըռ չին տեսե, չըն հավդնե…
Գեներալ Չեռնոզ հաճկեր պլշկըցուցեր էր,
կիշկեր,
Խզախներ զարմանք կդրե կայներ էն,
Չեռնոզ օր էդ հ՛ըմեն տեսավ,
Վախ հ՛ընգավ ընդրա սիրդ…
Գնաց, մողգծավ, մադներով մաժեց ընդրա թև,
Տեսավ, օր էնի ուր նմ։ն մառտ ա,
շադ հասարագ,
Անդրանիգ զորավար բացեց ուր լեն թիգունք,
Գեներալ Չեռնոզ ու մեգէլ խումանդարներ
տեսան,
Հավաքված խուժան իշկեց, տեսավ,
Ու հ՛ըմեն լե քար կդրին, կայնան,
Ծաղերու հողներ ծալվան,
Տունգ հ՛իճան ինչքան մառտ ու մադատ կար հոնի,
Օր Անդրանիգ լեն թիգունք քաշեց, բացեց,
Թիգունք հուշիգ-հուշիգ կարմրավ,
Թիգունք կանաճ-կարմիր դառծավ,
Տիրանանգուն Խաճ մի հիճավ ընդրա թիգունքին…
Հայ-կամավորներ Ուռռա՛ բոռացին,
Ռուս խազախներ եդ-եդ գնացին,
Բարագ քամի մի էգավ Արագեն
Մասիս սար հեռվից ծիծղաց հ՛ըմու վրեն
Գեներալ Չեռնոզ էրգու ձեռով հ՛անկեր փագեր էր,
Դոխծըվորի նման կնոջվեր ուր հ՛ոդներու վրեն…
— Տեսա՞ր, գեներալ Չեռնոզ,
Դը գնա մզա քու թակավորուն ըսա,
Թե էնտեխ Հայաստան աշխարկ տեսա

Դուկ կոնաք օր քիճ վախտ լավ աբրիք,
Աբիք էնքան վախտ,
Քանի ընդրանցից խլած հարստութեն դըռ կա,
Քանի ընդրանց հաց դըռ կա ու կուդիք,
Օր պռծավ, դուկ ընդրանց հողեր կծախիկ,
Կիդաք ուրիշի, կցնցխիք,
Ջըր սիրդ ընդրա վրեն չցավա, ախր, ձեր չէ,
Ջըր անբան տղամառտից կցրվին աշխրկով մեզ,
Կէրտան ուրիշ էրգիր, օր հած գդնին,
Էդ վախտ ես լե չըմ էղնի, դու լե, Թալյադ,
Չէ՝ սխալ ըսեցի, ես կեղնիմ, գիկամ, կխոսամ,
Հըմա դու մայվան իս դուդապատդվուզ,
Քզի գհիշին էն վախտ,
Օր բդի լրացուն հանցագործներու,
Մառտասպաններու, ցեղասպաններու, ցուցազ...»:
«Ջըգի պայող հայերին ին,
Ընդրանք ին ձըր աշխադող ձեռք,
Էրգիր օր ընդրանցից մաքրիք,
Մինագ ձըր տուն կքանդիք, ձըր էրգիր
կախկաղնա,
Գընկնիք պատքերու մեջ,— Կըսեր Ջոհրաբ,—
— Ախ, խեյկ ունի, խեյկ, օղորտ կըսա,
Հըմա մենք Կիպրոս կորուցինք,
Մենք Արևմուդկից շադ հեռեցանք,
Մըր հողեր թորգինք, փախանք,
Բուլղարյան ինն ա, էնի լե մզի հախտեց,
Ա՜խ, Անդրանիգ, դու էնտեխ լե մըր դեմ հ'ելար,
Չէ, մինագ էնի չէր, Ջոհրաբ օղորտ կըսա,
Մըր ուժ մինագ պզդիկ ասկերու վրա ա հախտ,
Մզա ընդրանք լե ազադութեն գուզին...»
— Չընք իդա, հ'ըսօր հայերուն կջառտինք,
Լուսուն ուռումներուն,
Մզլօր՝ մզի թև-թիգունք՝ քրտերուն,—
Ըսեց Թալյադ շադ ուրխցավ ուր դժոխկ
ծրագրից:
Խաբար գնաց, հասավ խազախներուն,
Գնաց, հասավ գեներալ Չեռնոզին,
Թե Անդրանիգ Դիլման առե,
Հրաման ա գուզա, օր էրտա հ'առեճ, հասնի
Վան,
Վանեցիք պաշարման մեջ քանի պես
կպաշտպանվին,
Անդրանիգ գուզա էրտա հասնի Մուշ, Սասուն,
Էնտեղի ժողովուրտ ընդրան ա կսպասա:
Գեներալ Չեռնոզ հավաքեց ուր զորք,
Լծեց ձիանք, հեդն քցեց աբոզ,
Քշեց, գնաց, Ջուլֆա կարմնջով հ'ընցավ,—
Գնաց թափով, հասավ Դիլման,
Տեսավ, օր հայ կամավորներ շարք կայնուզ ին,
Հըմեն դառծած ին մեզ մառտ, ձեն, մեզ եռզ.



Ուր ձին քշեց, գնաց, հասավ Անդրանիգին,
Թռավ, հ'իճավ ձիուծ, հասավ-փաթըըթվավ
ընդրան,—
— Ախ, հայդուզ, հայդուզ,
Հ'ըմենքսի ուրխծնի ինք քու հախտանազի վրեն,
Հ'ըմենքսի զարմացեր ինք,
Կեցցես Անդրանիգ, դու իսկազան կամավոր իս,
Զինվոր ու գեներալ, հըմա մը մօռծի,
Օր քզի պադիժ գհասներ,
Մզա քզի ուրիշ բան ա կիդան,
Բդի մզա թորգիս Դիլման ու էրտաս Թիֆլիզ,
Բդի էրտաս ու պադասխան իդաս,
Թե հ'ընչի հազառակ գնացիր թակավորու
հրամանին,
Հասկցա՞ր, գեներալ...
— Ի՞նն հանցանք իմ գործե, օր պադասխան
իդամ,
Էդ դու բդի կայնիք դադարանի հ'առեճ,
Օր մզի մինազ թորգիք դուշմնի դեմ,
Մենք լե կովելով տարանք հախտանազ, էդավ,
— Չէ, չէ, կադանիմ՝ ընձի սխալ չհասկնաք,
Բդի էրտաս ու քու պարգևներ ստանաս,
Ըսօրվեն հեդն՝ Ըռուսաստանի հ'ըմեն քախկի
դուռ
Բաց ա քու հառեճ,
Ուր օր գուզիս՝ կռնաս աբրիս,
Քզի Գևորգյան խաճ ա կամ տեսած,
Քզի ազնվազան ին ճանճցած,
Քու կնիգ-ճիժ, քու ընդանիք ու դու
Դառծեր իք արդոնյալ,
Քզի կալվածք գհասնի Սև ծովու ափեր,
Գնա, փաշա, գնա,
Գնա Թիֆլիս, գնա Բակու, գնա Պեդրեպոլ,
Անդրանիգ փաշեն վախտըմ չհասկցավ,
Թե ի՞նչ ա կըսա գեներալ Չեռնոզ.
Գնա Թիֆլիս, գնա Բակու, գնա Պեդրեպոլ,
Սև ծովու ափեր, կալվածքներ, ազնվազան,
Կնիգ, ճիժ, ընդանիք, արդոնյալ,
Հըմա շուդ մի գլխու հ'ընգավ,
Օր ուրան գուզին կովի գծից հեռեցուն,
Ուրան գուզին կդրին ուր զինվորներուց,
— Քու տուն չքանդվի՞, Չեռնոզ,— ըսեց
Անդրանիգ,—
Դու էդ ի՞նն ա կըսիս, ի՞նն ա կխոստանաս,
Դու դըռ մզի, հայ ֆիդայիններուն, չըս գինա,
Ախ, մենք տուն-տեղ չունինք,
Ախր, մենք տուն-տեղ չունինք,
Մըր տուն իդա շլեն ա,
Մենք ուխտեր ինք մինչ ի վեռն կովինք,
Կովինք ու մեռնիք մըր խեղջ ժողովրդի

# « ՁԵԶՊԵՍՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ... »

ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



ՀԱՐՈՒԹՅՈՒՆ-ՄԱՐՏԻՐՈՍ ՊՈՅԱՃՅԱՆ (ԺԻՐԱՅՐ) (1856—1894)

1894 թ. մարտի 24-ին Թուրքիայի Անկարայի վիլայեթի վարչական կենտրոն Յոզղատ գյուղաքաղաքի Սահաթհանե հրապարակը լի էր տեղի և շրջակա գյուղերի տարբեր ազգությունների բնակիչներով, զինվորականներով և ոստիկաններով: Հրապարակում երևում էր Հարություն-Մարտիրոս Պոյաճյանին (Ժիրայր) կախելու համար նոր պատրաստված կախաղանը: Թուրքական ոստիկանությունը ոչ մի կերպ չէր կարողանում բռնել Ժիրայրին և սկսեց բանտարկել մոտ 850 հայերի և նետեց թուրքական անտանելի զնդանները: Աբդուլ-համիդյան դաժան իրականության դեմ պայքարի ելած ամուր կամքի տեր Ժիրայրը, չնայած գտնըվում էր անմատչելի թաքստոցում, տեսնելով, որ պատճառ է դառնում հարյուրավոր անմեղ մարդկանց և նրանց ընտանիքների տառապանքին, որոշեց իջնել լեռներից և հանձնվել իշխանություններին:

Յոզղատում 16 օր տևող դատավարության ժամանակ Ժիրայրը իր ելույթներում փաստերով ապացուցեց, որ թուրքական անտանելի սիստեմի կրնկի տակ տանջվում են ոչ միայն հայերը, մնացած քրիստոնյա ժողովուրդները, այլև միլիոնավոր իսլամներ: Չնայած դրան՝ թուրքական դատարանը որոշեց կախել Ժիրայրին: Մահից առաջ իր մոտ գնացած հայ քահանային Ժիրայրը անվախ ու հպարտ ասել էր, որ իր համար, իր կյանքի այդպիսի վախճանի համար թող ոչ ոք չըտրտմի, քանի որ ինքը հայրենիքի և ազգի նկատմամբ կատարել է իր պարտքը և ցանել է «ազատության, եղբայրության և հավասարության» սերմերը:

Կախվելուց առաջ աննկուն հեղափոխականը իր ելույթում սկսում է տիրող կարգերի անխնա քննադատությունը և մերկացումը: Ծառից հետո անվախ Ժիրայրը ինքն է անցկացնում իր պարանոցին օղակը, ապա ոտքով հրում աթոռը և կախվում անտրտունջ:

Այժմ Ժիրայրի կյանքի և գործունեության մասին: Կիլիկիայի Հաճն քաղաքում Հակոբի և Սառայի ընտանիքում ծնվեցին երեք երեխա՝ Մարտիրոս Պոյաճյանը, Համբարձում Պոյաճյանը (Մեծ Մուրադ կամ Սասունի Մուրադ), որը գլխավորեց 1894 թ. Սասունի ապստամ-

թությունը և որի ավարտից հետո ստացավ 101 տարի բանտարկություն: 14 տարի հետո փախավ բանտից, 1908 թ. ընտըրվեց օսմանյան պառլամենտի , դեպուտատ և կախվեց 1915 թվականին: Նրան է նվիրված «Պարզիր աղբյուր» երգը: Երրորդ երեխան Հայկանուշն էր, որը իր երկու եղբայրների օրինակով մըխըրճվեց հայ ազգային-ազատագրական շարժման ոլորտը:

Ժիրայրը ծնվել է 1856 թվականին, սկզբնական կրթությունը ստացել է Հաճնի Վարդանյան դպրոցում: 1872 թ. ավարտելով դպրոցը, մեկնում է Կոստանդնուպոլիս, ուր երկու տարի սովորելուց հետո վերադառնում է ծննդավայրը և դպրոցում աշխատում է որպես ուսուցիչ: Այստեղ նա կազմակերպում է մի խումբակ, որի անդամները պետք է գաղտնապահ լինեին և ընդունեին մի երդմնագիր, որի մեջ ասված էր. «Ազգիս փրկության համար կամավոր զինվոր գրվեցա և ի հարկին կյանքս զոհելու պարտական եմ»: Շատ չանցած նա նորից գնում է Կոստանդնուպոլիս, ապա անցնում է Ռուսաստան և այնտեղ է մնում 14 տարի, մինչև 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմի ավարտը: Ցավոք, Ռուսաստանում նրա կյանքի և անցկացրած տարիների մասին մենք ոչ մի տեղեկություն չունենք:

1889 թ. վերադառնալով հայրենիք, նա սկսում է ուսուցչությամբ զբաղվել Հաճնում, Այնթափում, Դորթ-Յոլում և այլ վայրերում: Սոյուտլու գյուղում հովիվ էր և քարոզում էր, որ օսմանյան Թուրքիայում միայն հայը չէ, որ տառապում է բռնության մեջ, այնտեղ հարստահարվում են նաև թուրքերը, քրդերը, չերքեզները, որոնք կարող են այդ բռնակալական երկրում «դաշնակիցներ ըլլալ հայերուն: Պետք է մտնել անոնց մեջ, քարոզել, լուսաբանել մտքերը, փարատել տգիտությունը»: 1889 թ. Ժիրայրը ուսուցիչ էր Գրգաղաճ գյուղում, որի 150 հայ ընտանիքները թրքախոս էին, իսկ դպրոցում երեխաները սովորում էին «հայերեն գրերով և թուրքերեն լեզվով»: Ժիրայրը սկսեց երեխաներին հայերեն սովորեցնել, ապա դասավանդել հայոց պատմություն, սովորեցնում էր հայերեն երգեր: Թուրքական ոստիկանությունը սկսեց հետապնդել նրան, և նա ստիպված թողեց գյուղը:

Դրանից հետո տեղափոխվում է Այնթափ, ապա Դորթ-Յոլ, ուր զբաղվում է ուսուցչությամբ և աշակերտներին սկըսում զինվորական գործ սովորեցնել: Շուտով նա դառնում է կասկածելի անձնավորություն և ստիպված գնում է Ադանա քաղաքը, որտեղ մի քանի հայկական դպրոցներում կային 1200 աշակերտ-աշակերտուհիներ: Այստեղ իր դասավանդած առարկաների հետ միասին աշակերտների մեջ հեղափոխական գաղափարներ է սերմանում: Խուսափելով բանտարկությունից, նա գնում է Երիզա և ապա Բինկյան: Տեղի դպրոցներում դասավանդում է աշխարհագրություն, հայոց պատմություն և այլ առարկաներ: Դասերից դուրս՝ նա աշակերտներին տանում էր լեռները, նրանց սովորեցնում քարտեզներ գծել, մարմնամարզություն և զինավարժություն:

Կյանքը ստիպում էր Ժիրայրին գյուղից գյուղ անցնել: Այսպես՝ Խունկավիզ գյուղում նա տեսնում է, որ բնակիչները անտանելի չափով կեղեքվում են, և սկսում է նախապատրաստել նրանց պոռթկումը ընդդեմ հարստահարողների: Նրա քարոզները հայերից փոխանցվում են թուրք գյուղացիներին:

Հետաքրքրական են Սինճան հայ-թուրքական խառը բնակչություն ունեցող գյուղի դեպքերը: Գյուղը պատկանում էր մի թուրք կալվածատիրոջ, որը շատ էր ճընշում գյուղացիներին: Գյուղացիները կալվածատիրոջը ներկայացնում են իրենց պահանջները: Նրանց են միանում շըրջակա 7 գյուղերից հայ և թուրք գյուղացիները: Կալվածատերը ստիպված զիջումներ է անում, իսկ իշխանությունները ստիպված այդ փաստի կողքով են անցնում:

Փեռհրենկ գյուղում նա ծանոթանում է Թաթ (Ալեվի) Աբդուլլայի հետ, և նրանք մտերմանում են: Այնուհետև նա հանդիպում է Արամ Աշըգյալյանի հետ Սև ծովի ափին գտնվող նավահանգստային Որտու քաղաքում: Ապա նրանք հանդիպում են Կոստանդնուպոլսի զինվորական դպրոցի սաներ թուրք Շուքրիի և քուրդ Սլոյի հետ, որոնք ընդունում են նրա գաղափարները օսմանյան Թուրքիայում ժողովուրդների սոցիալական ու քաղաքական ծանր վիճակի մասին:

Իր պրոպագանդիստական աշխատանքների ժամանակ Ժիրայրը միշտ էլ ընդգծում էր, որ օսմանյան դաժան ռեժիմը ընկած է Թուրքիայում ապրող բոլոր ժո-

ղովուրդների ուսերին՝ անկախ ազգային պատկանելությունից: Առանձնապես հայերին միշտ էլ հորդորում էր սիրել մայրենի լեզուն, իմանալ ազգի պատմությունը. դրանից հետո նրանք կարող են համոզված լինել, որ հայը «հավիտյան ապրելու իրավունք ունի»:

Շուտով կառավարությունը ուժեղացնում է Ժիրայրի նկատմամբ իր հալածանքները, քանի որ 1892 թ. Փոքր Ասիայի 72 քաղաքներում պատերին փակցվեցին Թուրքիայի պատմության մեջ առաջին թռուցիկները (յաֆթա), որոնք խմբագրվել էին Ժիրայրի և Հովհաննես Պահլավունու կողմից: Թռուցիկներից մեկի մեջ ասված էր. «Օսմանցիներ, հասած են վերջին օրերը բռնակալ Աբդուլ Համիտի, որ անպատված է իսլամական անունը և կեղտոտած Օսմանի նվիրական գահը: Այդ բռնակալը հափշտակած է կայսրությունը և ավերած է մեր սիրելի հայրենիքը և ինքզինք կառավարության գլուխ պահելու համար կը հոսեցնե ամենալավ հայրենասերներու մաքուր արյունը: Այդ անիրավ գործերուն համար վրեժխնդրության ձայնը մինչև երկինք բարձրացած է: Գործելու ժամը հասեր է...»:

Վերոհիշյալ թռուցիկների երևան գալուց հետո թուրքական ոստիկանները Կեսարիայի շրջանում բանտարկեցին 850 հոգի: Նրանց հետ բանտարկվեց նաև Անտոն Ռշտունին, որը դատավարության ժամանակ սկսեց քննադատել թուրքական պաշտոնյաների չարագործությունները և հարստահարությունները, իսկ երբ կուսակալը պահանջում է նրանից լռել, նա պատասխանում է, որ ինքը կլռի, սակայն «մեր ետևը կան հարյուրավոր ըսպառազեն հերոսներ, որոնք երբեք չպիտի լռեն, մինչև որ չլսեք մեր բոլոր արդար բողոքները և չկատարեք մեր պահանջները»:

Հայ հայդուկների համար շատ կարևոր վայր էր Թեսալից ոչ շատ հեռու գտնվող Տերեվանքը, որի վանահայր Դանիել վարդապետը Ժիրայրի ամենաջերմ համախոհներից էր: 1892 թ. այդ վանքում Ժիրայրը հավաքելով հայդուկներին, որոշեց նրանց բաժանել 3 խմբի: Առաջինը գործելու էր Թորոս Ծառուկյանի (Մեծ Ձեյլո) գլխավորությամբ՝ Կեսարիայի շրջանում, երկրորդը՝ Միհիջանի գլխավորությամբ՝ Հալեպի շրջանում, իսկ երրորդը՝ տենիքմացենցի Վարդոյի գլխավորությամբ՝ Սեբաստիայի շրջանում: Խմբերի ընդհանուր ղեկավարը պետք է լիներ Ժիրայրը, որը նրանց հետ հանդիպում էր մերթ ոստիկանի, մերթ քուրդ ցեղապետի և մերթ դերվիշի հագուստներով:

Այդ տարիներին Սեբաստիայի, Գաղատիայի շրջաններում կային խմբեր՝ բաղկացած լազերից և թուրքերից, որոնց ղեկավարը Ասադ Չուրլին էր: Նրա անունը ժողովրդի մեջ աղավաղվելով ըստացել էր «Ձեյլո» անունը: Շուտով խմբի մեջ թափանցեցին նաև հայեր, որոնք նրանց հարվածները հեռացրին ժողովրդից և սկսեցին ուղղել հարուստների և թուրքական պաշտոնյաների դեմ: Խումբը իր ձեռք բերածը բաժանում էր աղքատներին: Ժիրայրի խորհրդով խումբը թուրքերի ուշադրությունը հայերից հեռացնելու նպատակով իրեն անվանում էր «Ձեյլո»:

Մի հավաքի ժամանակ Ժիրայրը հասկացրեց խմբի անդամներին, որ նրանց նպատակը միայն հարուստների և բռնակալների դեմ պայքարը չէ, այլև նպաստել «հեղափոխական գիտակցության, ինքնապաշտպանական ոգու զարգացման և արծարծման ժողովրդի մեջ»:

Ժիրայրի մասին գրվեցին բանաստեղծություններ, ողբերգություններ և շատ հոդվածներ ու գրքեր: 1908 թ. հեղաշրջումից հետո Հմայակ Արամյանցը գրեց «Անմահ Ժիրայր կամ մեծ հեղափոխականը» ողբերգությունը, որը բեմադրվեց Կոստանդնուպոլսի մի շարք թաղամասերում՝ Վահրամ Փափազյանի դրամատիկ խմբի կողմից: Մամուլում այդ ներկայացումների մասին տպագրվեցին հաղորդումներ, որոնցից մեկի մեջ ասված էր. «Թատրոն ծայրե ի ծայր լեցուն էր ամեն դասակարգի խուռն բազմությամբ երկու սեռեն»: Այդ ողբերգությունը բեմադրվեց 1913 թ. Ամերիկայում՝ Ուստրում:

Այսպիսով, Ժիրայրը հայ ազգային-ազատագրական շարժման այն գործիչներից է, որը հեղափոխական աշխատանք էր տանում ժողովրդի մեջ ազգային կուսակցությունների ստեղծման առաջին տարիներին: Իրավացի է Զարուհի Գալամքերյանը, երբ Ժիրայր և Մուրադ եղբայրների մասին գրում է. «Ճշմարիտ հայ կուրծքերը կուռին հպարտությամբ, երբ կը կարդան ԺԻՐԱՅՐԻ և ՄՈՒՐԱԴԻ, երկու եղբայրներու դյուցազնական ապրումները»:

ՏԱՆՅԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# Երեք աշակերտ

Նկարը՝ ԼԱԼԱ ԳԵՎԿԱՆ



Այծը աչքից ընկած երեք աշակերտ ուներ՝ կոկորդիլոսը, թութակը, սիրամարգը: Այդ երեքն էլ իրենց ողջ դպրոցական կյանքում միայն ու միայն անբավականություն պատճառեցին խեղճ ջահել այծիկին, որ նրանց հոգսից ծերացավ, ճերմակեց, և տեսողությունն էլ այնքան վա-

տացավ, որ նա արդեն ակնոց էր կրում:
— Կոկորդիլոս, ավարտում ես, գոնե մի տող բան սերտիր, վաղը պատասխանիր ինձ, որ կարողանամ քեզ դրական մի բան նշանակել:
Արցունքը, ինչպես միշտ այս դեպքերում, լճացավ կոկորդիլոսի աչքերում, և նա հոնգուր-հոնգուր լաց եղավ, ապա մի լավ հեկեկաց ու խորին թախիծ ու վիշտ տալով հայացքին, վշվշաց.
— Ով ամենաիմաստուն այծ, դու արդեն վաղուց գիտես, որ ես ծայրաստիճան թշվառ ու խեղճ արարած եմ, անօգնական, տուն չունեմ, իմ բնակարանի ջրերը ցամաքել են, էլ ես ինչպես կարող էի մի տող բան սերտել... Աղերսում, աղաչում, պաղատում եմ ձեզ, հասկացեք իմ հալը, քանի որ դուք գիտուն ու զարմանալի, խելացի այծ եք, և նշանակեք ինձ դրական մի բան: Կոկորդիլոսը լիզեց այծի կրնղակները, չլմփոցով համբուրեց նրա պատկառազդու մորուքն ու ակնածանքով ետ-ետ սողաց...
— Թութակ, դո՛ւ ինչ կասես, միտք չունե՞ս մի ինքնուրույն խոսք ասելու ի վերջո... Էհ, ասենք ավելի լավ է՝ լռիր:
Թութակը չհասցրեց լրիվ մտապահել այծի ասածը, աչքերը չռելով նայեց ուղիղ ուսուցչի աչքերին և հազիվ կրկնեց.
— ... Ավելի լավ է՝ լռիր...
Թութակն ուսման տարիների ընթացքում ցուցաբերել էր վերին աստիճանի բթամտություն, քարի, կոճղի, երկաթի բացարձակ անզգա վերաբերմունք դեպի գիտելիքների աշխարհը, և նրա ուղեղը գրմալով կարծրացել էր, երևի վերածվելով դպրոցական սովորական կավճի...
Բայց դե այծը և նրա համախոհները երբեմն-երբեմն ասում էին.
— Դե գոնե աշակերտը կարողանում է կրկնել,— և թութակը այսպես էլ հասավ ավարտական դասարան:
... Բազմավաստակ այծը ուղղեց ակնոցը.
— Սիրամա՛րգ, գեղգեղա:
Գեղեցկուհի սիրամարգը մեկ-մեկ բացեց գունազարդ փետուրները՝ դանդաղ ու հանդիսավոր, սքանչելի շորորաց ու չափազանց գրավիչ ժպտաց.
— Ե՜ս, մի՞թե...
Այսինքն՝ անհարմար չզգա՜ց ծեր այծը, որ ոտքի կանգնեցրեց սիրուն սիրամարգին և անհանգստացրեց նրան ինչ-որ տարօրինակ հարցով, կամ մի՞թե այծը չի ճանաչում իր մեծահամբավ սիրամարգ հորն ու սիրամարգ մորը, նրանց փայլն ու պերճանքը չի՞ հարգում, որ պատասխան է պահանջում դուստր սիրամարգից...
... Ուսուցիչը ի վերջո խոնարհեց գլուխը ու տարավ իր լուծը.
— Այսպիսով ավարտեցինք դպրոցը, սիրելի աշակերտներ:
Բոլոր աշակերտների հետ կոկորդիլոսը, թութակը, սիրամարգն էլ իրենց շոյված զգացին այն բանից, որ ավարտում են և որ իրենց էլ կոչեցին սիրելի...
Անցան տարիներ:
Այծի մորուքը ավելի էր ճերմակել, և նա այլևս դպրոցում չէր աշխատում: Տանը նստած նա դեսից-դենից լուրեր էր առնում իր ավարտած-գնացած սաների մասին, տխրում էր կամ ուրախանում: Բընական է, որ նա նաև լսում, նույնիսկ լրագրերում կարդում էր իր աչքից ընկած երեք աշակերտների մասին: Ահա կոկորդիլոսը դարձել է ծովային կենդանական աշխարհի խոշորագույն կառավարիչներից մեկը և, ձկնիկներ կուլ տալով, երբեմըն հիշում է իր դպրոցական կենսագրությունը՝ «գերազանց» ուսում, այծ ուսուցչից ստացած անթիվ գովասանքներ: Բոլորը ակնածանքով, բերանբաց լսում են տաղանդավոր կառավարչին և ջրի հետ հոսում նրա երախը:
Իսկ թութակը: Կրկնել է բազմաթիվ հանճարեղ մարդկանց մտքերը, իհարկե, այս դեպքում արդեն՝ գրավոր կերպով, և լցրել է բազմաթիվ հաստափոր հատորներ, դառնալով փիլիսոփա, գիտնական, դոկտոր-պրոֆեսոր: Եվ նրան հարգ ու պատիվ են տվել, տեղավորելով մի հարմարավետ վանդակում և պարծենալով ցույց են տալիս, թե՝ տեսեք ինչ հանճարեղ թռչուն է թութակը, փայլուն մտքեր արտահայտելու ինչպիսի օժտված տաղանդ...
Դե, սիրամարգն էլ այնպես է ապրում, ինչպես ուսուցչի պատմած հեքիաթների մեջ չէին ապրում իշխանուհին կամ թագուհին, և նրա համար տհաճ բան էր դպրոցը, այծին ու իզուր անցած տարիները հիշելը:
Բայց զարմանալին այն էր, որ ծեր այծը արտակարգ ոչինչ չէր լսում իր լավագույն աշակերտների՝ էշի, ոչխարի, ձիու մասին: Շատ հետաքրքիր կլիներ մոտիկից տեսնել ու լսել հենց նրանց, թե ինչպիսի ապագա ունեցան:
Ծեր ուսուցիչը հառաչեց:

Ղարաբաղյան համաժողովրդական շարժմանը նվիրված այս շարադրությունները, որ խմբագրության առաջարկով գրել էին մի խումբ դպրոցականներ, հնարավոր չեղավ ժամանակին տպագրել: Պատճառները հայտնի են, չարժե նորից անդրադառնալ: Խմբագրությունը որոշեց թեկուզ ուշացումով տպագրել դրանցից մի քանիսը, որովհետև, նախ՝ անկախ այն բանից, թե իրադարձությունները ինչպիսի ընթացք և լուծում կստանան մինչև այս համարի լույս տեսնելը, մեզ հիմնականում հետաքրքրում և ուրախացնում է դպրոցականների ակտիվ դիրքորոշումը հասարակական և քաղաքական խնդիրների հանդեպ: Երկրորդ, եթե մեծերը նման հարցերում հասկանում են (նույնիսկ չափից ավելի շատ), թե ինչ է նշանակում «չի կարելի»-ն, ապա փոքրերի համար այդ նույն «չի կարելի»-ն մնում է անըմբռնելի: Եվ դա նրանց մեծագույն առավելությունն է: Չխլենք այդ առավելությունը նրանցից և ժամանակից շուտ «չհասունացնենք» նրանց: Կարելի՛ է, երեխաներ...

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Փետրվարյան ցրտաշունչ օրերին երևի ոչ մեկի մտքով անգամ չէր անցնում, թե ականատեսը կլինի այնպիսի հայրենասիրական մի շարժման, որն իր վրա կգամի ողջ աշխարհի հայացքը: Արցախյան շարժումը ծնվեց ինչպես փոթորիկ՝ զառամյալ ծովի միապաղաղ ճոճվող ալիքների վրա: Տակնուվրա արեց երկրի «ճահճային» կյանքը ու ստիպեց լարել մտքերը, խորհել, մտածել:

Հայրենասիրական այս ծավալուն շարժման մեջ ներքաշվեցինք նաև մենք՝ աշակերտներս: Ոմանք կարծում են, թե դա երեխաների գործը չէ, որ նրանք պիտի զբաղվեն միայն ուսմամբ, բայց...Չէ՞ որ մենք էլ հայ ենք, մենք էլ ենք ուզում անարդարության դեմ մեր ձայնը բարձրացնել, որովհետև թերևս ոչ ոք այնքան սրտամոտ չի ընդունում կեղծվող ճշմարտության դառնությունը, որքան մենք:

Երբ ընկերներիս հետ առաջին անգամ այդ օրերին եղա Ազատության հրապարակում և տեսա մարդկանց այդ ծփացող ծովը՝ հուզմունքից մի պահ կարկամեցի, սիրտս սկսեց անհանգիստ տրոփել...

Երեկոյան տուն դարձա: Ամբողջ ճանապարհին քայլեցի ու կարծես հոգնություն չէի զգում: Երբեմն-երբեմն փողոցի անկյուններից դուրս էր հորդում մարդկանց մի նոր հոսանք և, պլակատներով ու դրոշներով, ուղղվում դեպի Ազատության հրապարակ...

Եվ իրոք, այս օրերին մեր երիտասարդությունը բարձր պահեց իր անունը, պատիվն ու արժանապատվությունը: Նա էր միշտ ավանգարդում և փետրվարմարտյան օրերին, և հուլիսյան այրող օրերին:

Մինչև այժմ իմ մտքով չէր անցնում, թե հայ մնալու համար հարկավոր է պայքարել... Ես կարծում էի, թե ազգը ազգ էլ մնալու է, ինչ էլ որ լինի, բայց դա այդպես չէ: Մեր արժանապատվության, մեր ինքնասիրության ու հանգիստ կյանքի, մեր մի բուռ հողի ու հայ մնալու համար հարկավոր է պայքարել ու պայքարել... Որքան էլ որ դա տարօրինակ թվա, պայքարել հենց մեր օրերում, թույլ չտալ, որ ոչ մի ազգ իր պատմությունը «հարըստացնի» հարևանի հաշվին...

ԳՈՀԱՐ ՄԿՐՏՉՅԱՆ

Ստ. Շահումյանի անվ. դպրոց, 9-րդ դաս.

Բոլորս էլ հոգնել ենք «Հայոց հարցից»: Հայոց պատասխան ենք ուզում: Այսօր կարող ենք խոսել բոլորս, կարող ենք: Այսօրվա մեր գոտեմարտը ընդդեմ խավարի է:

Ի՞նչ է կատարվում մեր ժողովրդի հետ: Պայքար, ոգևորություն, հուզմունք, հպարտություն, վստահություն, հավատ... Հավատում ենք, որ բարին ու ճշմարիտը կհաղթանակեն, որովհետև հավատացել ու հարատևել ենք... Հավատում եմ նաև, որ մենք երբևէ կկարողանանք կամուրջ ձգել արևմտահայերենի և արևելահայերենի միջև: Աշխարհի ողջ հայությունը կխոսի մի լեզվով, ու բոլորս կհասկանանք միմյանց:

Արցախի ամեն քար լռում է հայերեն, ամեն աղբյուր երգում է հայերեն, ամեն սար ու ձոր, ամեն լեռ արձագանքում է հայերեն, նույնիսկ ցորենը, հողից բա-

ժանվելիս հառաչում է հայերեն:

Արցախի հայ ժողովուրդը չի ուզում ապրել հին ձևով: Փոթորկվել է Արցախը: Լիովին փշրել ենք ուզում Արցախի ու Մայր Հայաստանի միջև ձգված երկաթե վարագույրը, որ հավերժ որբ ու խորթ չմնան մեր հայրենակիցները: Առանց արևի կյանք չկա: Իսկ շատ տասնամյակներ նրանք զրկված էին մայր Արևի լույսից: Հույս ու հավատ ունենք, որ Արցախ աշխարհի վրա կշողա մայր Հայաստանի ջերմ արևը:

ՄԱՐԻՆԵ ՍԱԴՈՅԱՆ
Երևան, № 23 դպրոց, 9-րդ դաս.

Այս ամիսների ընթացքում ոչ մի օր խաղաղ չեմ անցկացրել: Զայրացել եմ մամուլի, հեռուստատեսության ոչ ճիշտ մեկնաբանությունների, զրպարտչական վիրավորանքների, մեր ժողովրդի հասցեին ուղղված հերյուրանքների համար: Լիովին հավատում եմ Ղարաբաղ կոմիտեին, որի առաջ քաշած հարցերի մեծ մասը օբյեկտիվ է. նրանք մեր շարժման առաջին օրից մինչև այսօր ժողովրդի հետ են, և ժողովուրդն էլ հավատում է նրանց: Այդ են ապացուցում բազմահազարանոց միտինգները, խաղաղ

Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ



ցույցերը: Ինչպես կարող եմ մոռանալ Սումգայիթի անմեղ զոհերի հիշատակին նվիրված սգահանդեսը Ծիծեռնակաբերդում:

Ճիշտ է, այս ամիսների ընթացքում հայ ժողովուրդը շատ թանկ վճարեց արցախցիների արդար պահանջին սատարելու համար՝ Սումգայիթի կոտորած, Մասիսում՝ 51 կանանց թունավորում, Թուշիից հայերի արտաքսում, սպանություններ, բնակարանների հրկիզում և վերջապես գործադուլներ ու հացադուլ-

ներ: Այս բոլորը ծանր ապրեցինք բոլորըս, և մենք՝ երեխաներս, մի քանի ամսվա ընթացքում միանգամից մեծացանք, ճանաչեցինք ժողովրդին, միմյանց: Ճիշտ է, որոշ մարդիկ գտնում են, որ գործադուլներն ու հացադուլները պայքարի ձև չեն, բայց իմ կարծիքով դրանց միջոցով մենք կարողացանք մեզ վրա գրավել ոչ միայն սովետական ժողովրդի, այլև ամբողջ աշխարհի արդարամիտ մարդկանց ուշադրությունը: Ես հուսով եմ, որ Սովետական կառավարությունը հաշվի կառնի մեր ժողովրդի և Հայաստանի Գերագույն իշխանության միասնական կարծիքը, կպատժի հակասովետական, հակահայկական արարքներ թույլ տված անձանց, և Արցախի հարցը դրական կլուծվի: Ամեն մի թիզ հողի համար պատմության ընթացքում միշտ արյուն է թափվել, զոհեր են եղել: Հայ ժողովուրդը էլի արյուն տվեց 20-րդ դարի վերջում, խաղաղ պայմաններում:

ԱՆԱՀԻՏ ՄԵԼՔՈՆՅԱՆ
Ստ. Շահումյանի անվ. դպրոց

Ես, որպես հայ պիոներ, կարող եմ իմ կարծիքը հայտնել. մեր ողջ ազգի պահանջը իրավացի է և արդարացի: Իսկական դեմոկրատիան դա է պահանջում: Հայ ազգի գոյատևման համար Արցախի հարցը պետք է լուծվի մեր ազգի օգտին: Իմ կարծիքով՝ եթե կա դեմոկրատիա, ապա հարցի ուրիշ լուծում չկա:

ԱՐՓԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ
Ստ. Շահումյանի անվ. դպրոց, 7-րդ դաս.

Ղարաբաղյան շարժումը մեզ բոլորիս շատ բան սովորեցրեց, ես այլ կերպ սկըսեցի մտածել: Մի՞թե կարելի է, որ մի ընտանիքի անդամներն ապրեն իրարից հեռու, անջատ: Ինչու թողնել և լռել, որ Հայաստանի անբաժանելի մասը կազմող Ղարաբաղը՝ պատմական Արցախը, տրորվի և ոչնչանա, մի՞թե Նախիջևանը մեզ համար օրինակ չեղավ: Արդեն ժամանակն է, որ ոտքի ելնենք նաև մենք՝ դըպրոցականներս՝ այս և նման հարցերի արդարացի լուծման պահանջով:

ՄԻՆԱՍ ՇԱՀԻՆՅԱՆ
Երևան, № 1 դպրոց

Պարզապես վիրավորական է: Չէ՞ որ սա խաղաղության երկիր է, իսկ հայերը՝ քաղաքակիրթ ժողովուրդ, բայց փորձում են հակառակը «համոզել»: Մեր հարկի տակ մեզ հսկում են տասնյակ հազարավոր զինվորներ, նույնիսկ արգելում մեր սեփական փողոցով քայլել, իսկ Ադըրբեջանում չարագործները, ազատ զբոսնում են...

Այս ահավոր վիրավորանքից ես հասկացա, որ ճիշտ էր իմ ժողովրդի պայքարը և որ Արցախը մերը պետք է լինի, անպայման մերը: Լավ է, որ ես հայ եմ:

ԱՆՆԱ ԲԱՐՍԵՂՅԱՆ
Ստ. Շահումյանի անվ. դպրոց, 7-րդ դաս.

Ի՞նչ է նշանակում էքստրեմիստ, որը կպցրել են հայ ժողովրդին: Այս հարցը ինձ շատ է հուզում: Ես դա չեմ հասկանում: Խնդրում եմ բացատրեք:

ՍՍՀՄ Գերագույն դատարանում ընթանում է սումգայիթյան դատը, այո, սումգայիթյան, որի ժամանակ մի քանի օրվա ընթացքում թափվեց անմեղ մարդկանց արյունը, փողոցները լցվեցին նըրանց արյունով միայն այն պատճառով, որ այդ մարդիկ հայ են, պարզ ու հասարակ հայ...

Գոչում ենք վերակառուցում, դեմոկրատիա... Բայց դա չենք նկատում: Սումգայիթը վերակառուցո՞ւմ է, թե՞ վերաքանդում: Այսպես եմ ասում, որովհետև սովետական կարգերի ժամանակաշրջանում կատարվեց երկրորդ 1915 թվական, երկրորդ եղեռն...

Այն դատավարությունը, որին մենք ըսպասում էինք, իր աշխատանքը սկսեց ոչ թե արդար ձևով, այլ անարդար:

Կատարվեց բռնաբարություն, թալան ու սպանություն, այն էլ կատարեց ոչ թե երեք հոգի, որոնք հիմա նստած են մեղադրյալի աթոռին, այլ մի ամբողջ խումբ, որը պետք է նստած լիներ այդ երեքի տեղը...

Այդ դատավարությունը պետք է ընդունի սումգայիթյան եղեռնը, որը իրագործվեց «մի քանի» ջարդարարների կողմից 1988 թվականի փետրվար ամսին: Այո, պետք է ընդունի, դա մեր արդար պահանջն է...

Շատ եմ ուզում, որ չխեղաթյուրվի պատմությունը և չկրկնվի երկրորդ սումգայիթը...

Մյուս խոհերս կկիսեմ ձեզ հետ հաջորդ նամակում:

ՍՈՒՍԱՆՆԱ ՇԱՀԲԱԶՅԱՆ
Երևան, Հ/Ա Բ—1 թաղ., 7-րդ դասարան

# ԳՈՒՅՆԸ ԵՎ ՄԱՐԴԸ

**Ինչպե՞ս բացատրել գույնի ունեցած այս կամ այն ազդեցությունը կենդանի օրգանիզմների և մասնավորապես մարդու վրա: Ցավոք, առ այսօր չկա մի ամբողջական բացատրություն, սակայն եղած բացատրությունները համառոտակի կարելի է ներկայացնել այսպես:**

Պարզվել է, որ տեսողությունը վերարտադրում է արտաքին աշխարհի մասին եղած ինֆորմացիայի մոտ 90 տոկոսը: Մասնագետները հաստատում են, որ եթե մարդու մեկ օրվա տեսածը նկարահանենք, ապա կստացվի մոտավորապես քսան կիլոմետրանոց ժապավեն: Փաստորեն մարդկային աչքը օժտված է տեսողական անսահման հնարավորությամբ: Պարզվել է, որ աչքի ցանցաթաղանթի վրա գոյություն ունեն ճառագայթների ընդունման երեք տիպի կենտրոններ՝ կապույտ, կանաչ և կարմիր գույներն ընկալելու հատկություններով օժտված: Ցանկացած ճառագայթ ազդում է այդ երեք կենտրոնների վրա միաժամանակ, որից հետո կենսաբանական և ֆիզիկական մի շարք օրինաչափությունների հետևանքով՝ ուղեղին հասնում է այդ գույներից որոշակի մեկի գերակշռությունը:

Մարդկային աչքն ընդունակ է տարբերակել գույնի մոտ 300 երանգներ: Մյուս կողմից՝ ժամանակակից մարդը, աստիճանաբար հեռանալով բնական գույներից, իրեն շրջապատում է արհեստական միջավայրով: Հատկապես մեծ քաղաքներում ապրող մարդը զգում է բնական գույների «քաղց»: Բայց մի՞թե մենք մեծ քաղաքների մեր բնակարաններում և աշխատավայրերում չենք կարող ստեղծել մեր ուզած գույները: Կարող ենք, իհարկե, և այստեղ առաջ է գալիս գույների պակասի կամ ավելցուկի վտանգը: Մի օրինակ. երեխան պատրաստվում է քնելու կարմիր պատեր ունեցող ննջասենյակում: Երբ երեխայի դիրքը փոխվում է այնպես, որ նրա դեմքը շատ մոտ է լինում պատին, նա սկսում է լալ և հանգստանում է այն դեպքում, երբ դեմքի և պատի միջև տեղադրվում է սպիտակ էկրան:

Հետաքրքիր է, որ գույնը ազդում է նաև մարդու ախորժակի վրա: Ապացուցված է, որ վառ գույները, որպես կանոն, գրգռում են ախորժակը, և սննդամթերքը կարծես ավելի համեղ է թվում:

Եվ այսպես, մարդը ստիպված պետք է «բանակցությունների» մեջ մտնի գույների հետ: Պետք է նախընտրի այս կամ այն գույնը: Նախընտրի, բայց ի՞նչ սկզբունքով: Ամեն ոք կձգտի այն գույնին, որը քիչ է հանդիպում իր առօրյայում: Այսպես, օրինակ. գյուղական շրջանի բնակիչները առավելությունը տալիս են վառ կարմիր, նարնջագույն և կապույտ գույներին, որոնք այնքան էլ տարածված չեն բնության մեջ: Եվ դա հասկանալի է: Չէ՞ որ նրանց աչքերը արդեն հագեցել են բնության մեղմ գույներից, ասենք՝ կանաչից: Հասկանալի է, որ քաղաքաբնակներին ավելի հաճելի են մեղմ, այլ կերպ ասած՝ բնության մեջ տարածված գույները:

Իհարկե, այս կամ այն գույնին առավելություն տալը կամ չտալը կախված է նաև այս կամ այն մարդու կենսաբանական առանձնահատկություններից, տարիքից, ապրած վայրի կլիմայական պայմաններից: Կարելի է ենթադրել, որ երիտասարդ հասակի մարդիկ կձգտեն վառ, իսկ ծերերը՝ ավելի մեղմ գույների: Բայց ո՞ր գույներն են մարդկանց մեծամասնության համար առավել ընդունելի: Ներկայացվող շարքում գույները դասավորված են ըստ իրենց առավել ընդունելիության աստիճանի: Ահա այդ շարքը. երկնագույն-մանուշակագույն-սպիտակ-վարդագույն-վառ-կարմիր-կանաչ-դեղին-նարնջագույն-շագանակագույն և վերջապես գրեթե բոլորի համար քիչ ընդունելի՝ սևը:

Նկատվել է, որ տարբեր գույների ազդեցությունը մարդու մեջ կարող են ի հայտ բերել տաքի կամ ցրտի զգացողություն, որն իրականում, մարդու մարմնի ջերմաստիճանի բարձրանալու կամ իջնելու հետ կապ չունի: Կապույտ գույնով ներկված սենյակում գտնվող մարդիկ սառնություն են զգում, իսկ հարևան՝ նա-

ըՆշագույն սենյակում սառնությունը բացակայում է:

Այսօր գունային էֆեկտները կիրառվում են մարդկանց աշխատունակությունը, ինքնազգացողությունը և տրամադրությունը բարձրացնելու համար: Բերենք մի քանի օրինակներ: Մի շարք կլինիկաներում երկնագույնը կիրառվում է հիվանդների անքնությունը և վատ տրամադրությունը վերացնելու նպատակով:

Ամերիկյան գործարաններից մեկում պողպատյա սև արկղերը կարծես թեթևացան, երբ ներկվեցին բաց կանաչ գույնով: Գործարանների արտադրամասերի պատերի գունապատումը միշտ էլ նպաստել է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:

Մի հետաքրքիր փաստ ևս: Ապացուցված է, որ դպրոցներում դասասենյակների հաջող ներկապատումը գրավում է երեխաների ուշադրությունը, դրական փոփոխություն է մտցնում երեխաների ֆիզիոլոգիական վիճակի մեջ: Հետաքրքիր փորձ. աշակերտները ստացել են թվաբանական խնդիրներ, որոնք տպագրված էին սպիտակ, կարմիր և կանաչ գույն ունեցող թղթերի վրա: Պարզվեց, որ կանաչ գույնի թղթերի վրա տպագրված խնդիրները ավելի շուտ և ավելի շատ աշակերտներ լուծեցին:

Չպետք է մոռանալ նաև գույնի ազդանշանային կիրառությունը: Շատերին հայտնի է, որ դեղին և կարմիր գույնի ավտոմեքենաները շատ քիչ են վթարի ենթարկվում: Հատուկ հետազոտությունները պարզել են, որ վարորդներին դեղին և կարմիր գույնի ավտոմեքենաները գրեթե հինգ մետր ավելի մոտ են թվում, քան սևերը, գորշ գույնի մեքենաները, որի հետևանքով զգուշության աստիճանը ավելի է մեծանում: Դուք նկատել եք, անշուշտ, որ գեր մարդիկ խուսափում են վառ գույնի հագուստներից: Սև կոստյումը գեր տղամարդուն կարծես ավելի նիհար է ցույց տալիս: Հիմա բոլորի՞ս է հասկանալի, թե ինչու փողոցը վերանորոգող բանվորները հագնում են վառ նարնջագույն արտահագուստներ:

Գիտական նոր հայտնագործությունները, անկասկած, հնարավորություն կընձեռեն բարեփոխելու մեր բնական միջավայրը՝ ի օգուտ մարդկային բարօրության:

**ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ**

Հիմա ինձ թվում է, թե ես կրկին երկրորդ դասարանի աշակերտ եմ, բայց առաջվա պես ոչ թե երրորդ նստարանին եմ նստել, այլ՝ ամենավերջին: Դասընկերներս գողունի հայացքով ինձ են նայում: Տարօրինակ է. մի՞թե նրանք ինձ չեն հիշում, ախր ես էլ եմ այս դասարանից...

Ուսուցչուհու ձայնից դասարանը միանգամից աշխուժանում է: Բոլորն էլ սկսում են թափահարել իրենց ձեռքերը, ուզում են դաս պատասխանել, իսկ ես անշարժ նստել ու նայում եմ նրանց: Ամաչում եմ, չգիտեմ՝ հայացքս ո՞ւր թաքցնեմ: Ես նույնիսկ չգիտեմ, թե ուսուցչուհին ի՞նչ հանձնարարություն է տվել: Հանկարծ ինձ դաս չհարցնի՞... Ինչքան էլ ուզում եմ խուսափել ուսուցչուհու հայացքից, միևնույն է, նկատում է ինձ: Գլուխս հակում եմ աշակերտական նստարանին: Գոնե դասագիրք ունենայի... Եվ հանկարծ լսում եմ՝

Դեղնած դաշտերին
Իջել է աշուն,
Անտառը կրկին
Ներկել է նախշուն:

Լիլիթն է արտասանում: Ուրեմն՝ դասն անգիր է հանձնարարված: Նրա ձայնի հետ կարծես դասարանը աշնան տերևների հազարերանգ գույներով է լցվում: Հիմա էլ Շուշանիկն է արտասանում՝ սահուն ու գեղեցիկ, հետո Արտակը՝ մեղմ ու բարեհունչ: Ուսուցչուհին նրանց գովասանքի խոսքեր է ասում: Այնպես եմ ուզում, որ նա ինձ էլ մատնացույց անի բոլորի առաջ՝ իբրև լավ և օրինակելի աշակերտի: Ես էլ եմ ուզում արտասանել, ու ձեռքս ակամայից բարձրացնում եմ վեր: Ողջ դասարանը զարմացած ինձ է նայում Ես ավելի եմ շփոթվում, իսկ ուսուցչուհին ժպտում է... Հնչում է զանգը: Ձեռքս կտրուկ իջնում է ցած: Դասն ավարտված է:

Ու երբ դասասենյակում մնում ենք երկուսով՝ ես և Երևանի № 156 դպրոցի մանկավարժ Էմմա Խաչատրյանը, շնորհակալությունս որևէ կերպ արտահայտելու ուժ չեմ գտնում՝ ինձ շնորհված այդ վաղանցուկ պահերի համար. երբ ես կրկին երկրորդ դասարանում էի ու դասը Հովհաննես Թումանյանի այս հրաշք բանաստեղծությունն էր: Ես ոտքի եմ կանգնում և արտասանում, բայց ոչ գնահատական ստանալու ակնկալությամբ:

Էմմա Խաչատրյանը ժպտում է և պատմում, թե ինչ մտքերով ու ծրագրերով ե-



# Մայրենիի ուսուցչուհին

կավ դպրոց տասնհինգ տարի առաջ: Կարծում էր, որ միայն բարձր դասարաններում է հնարավոր իր իմացությունն ու գիտելիքները «շաղ տալ» աշակերտների առաջ, որպեսզի նրանք էլ իր նման կախարդվեն Թումանյանի պոեզիայով, հիանան Տերյանի բանաստեղծությունների քնքշությամբ և հպարտ զգան իրենց, երբ կարդան Վարուժան ու Չարենց: Բայց այնպես ստացվեց, որ նրան վստահեցին 1-ին դասարան: Գուցե զգացել էին երիտասարդ մանկավարժի անմիջական, պարզ խառնվածքը: Նա մտավ առաջին դասարան ու մանկական վճիտ աչքերի առաջ համրացավ միանգամից: Փոքրիկների զարմացած-հիացական հայացքները չշփոթեցրին ուսուցչուհուն, այլ ընդհակառակը՝ ոգևորեցին: Օրեցօր մտերմիկ ու հարազատ դարձան բոլորը: Ինքն էլ խանդավառվեց մանկական երևակայությամբ, և ամեն բան դարձավ և՛ հեշտ, և՛ հաճելի: Յուրաքանչյուր նոր դաս տոն դարձավ: Իսկ հիմա, երբ խոսք է լինում բարձր դասարաններում դասավանդելու մասին, Էմմա Խաչատրյանը օրորում է գլուխը և կտրուկ նկատում՝ առանց փոքրիկների ես չեմ կարող:

Որքան էլ խորհում ես, պարզ է դառնում մի բան, որ ուսուցչի կենսագրությունը տարեթվերի հաջորդական գրառում չէ և ոչ էլ սովորական օրերի ընդհանուր գումար, այլ հարյուրավոր մանուկների ճակատագրերի պատմություն, որ հյուսվում է շատ զգուշորեն ու մեծ նըվիրվածությամբ: Այս դեպքում է, որ ուսուցչի վարքն ու մասնագիտական իմացությունը այդ փոքրիկներից ամեն մեկի համար դառնում է բախտորոշ:

Էմմա Խաչատրյանը հիացմունքով է խոսում հայոց լեզվի մասին, կարծես անձամբ տեսել ու ճանաչել է բոլոր նրանց, ովքեր մեսրոպատառ լեզուն ամուր պահեցին ու հասցրին այստեղ՝ այս դասարանը, այս փոքրիկներին: Եվ մայրենիի ուսուցչուհին քնքշորեն ու հստակ է արտասանում յուրաքանչյուր բառ ու հասկացություն, իսկ փոքրիկները կարծես ըզգում են, հասկանում են մայրենիի ջերմությունն ու վեհությունը:

Երբ դպրոցից հեռու էի, հիշեցի մանկական այն հիացական հայացքները, որ ուսուցչուհին փոխհատուցում էր մայրական հոգատարությամբ, և ամեն ժամ ու ամեն պահ իր հերթին ավանդում նրանց՝ «Ճանաչել զիմաստություն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»:

ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

ՎԱՀԱՆ ԹԱՄԱՐՅԱՆ

# ՇԵՓՈՐ

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Կոված չէին, բայց դա ամենևին էլ հաշտություն չէր:

Ընդհանրապես, կոված չլինելը երբեք հաշտություն չէր: Փոքրիկը չգիտեր, թե ինչու է այդպես ու աչքից հեռու թվացող մի տեղ՝ ինքն իր մեջ մի բուռ ատելություն էր թաքցրել: Ատելության անունը չգիտեր, ծագումը գիտեր, անունն առայժմ անհայտ էր: Անունը երևի կարևոր էլ չէր: Իր մերացվի հանդեպ ունեցած այդ գողտուկ ատելության և նախնյաց արյան տաք վերադարձի կապը չէր բացատրվում: Նման վերադարձ կար, բայց նախնյացն էլ էր անբացատրելի: Ներլցվող արյունն անտեսանելի ընթացք ու կշիռ ուներ, սակայն մտերմիկ կապը շարունակվում էր: Օտարը, որ փոքրիկը որպես տհաճ հոտ էր ընկալում, պատրաստի հալածանք էր օրվա բոլոր ժամերին: Եվ դժվար էր չկովել: Իբր հենց այնպես առիթով կռիվն ավելի սանձարձակ էր ստացվում: Ապահովության համար հեռու կանգնած՝ ասում էր իր խոսքերը: Արցունքն աչքերին՝ մի կերպ ասում էր հոգու պաշտպան խոսքերը և ակամա հայհոյում, որովհետև դրանից էլ լեղի էին մերացվի՝ օտարի ապտակի պես վառող, մորթող, սիրտը քարին զարկող խոսքերը: Եվ մանկան հոգու արդարության խեղումով հայհոյում էր իբր պաշտպան ու ապավեն լեզվով՝ իբր հակակշիռ զորությամբ, իբր հաղթելու համար: Կռվում էին հավասարը հավասարի պես, բայց փոքրիկը գիտեր, որ ինքը մեղք է, քանզի նաև գիտեր, որ պարտվում է ու պիտի պարտվի՝ քանի դեռ չի կարող հաղթել: Հետո, որ առավոտներով սպասում էր մորը, որ երազներում ապրեցնում էր մոր հրեղեն պատկերը և վերադարձ աղերսում, հանկարծ զգում էր իր աղերսների ու սպասման որբությունն էլ և սրսկված լաց լինում: Իսկ օտարի հոտն ուժեղանում էր: Օտարի հոտը բռնում էր ամբողջ տունը, ծանրանում տան բոլոր անկյուններով ներծծված խնձորի վաղընջական բույրի վրա և հաղթում էր: Դա մերացվի երկվությունից էր բխում և, միաժամանակ, այդ երկվության դեմ էր: Փոքրիկը գրպանները խնձոր էր լցնում, որ օտարին խնձորի բույրով հաղթի: Մերացուն, իր երկվությունից անգթացած, այդ պայքարի կողքով էր անցնում կամ պայքարում էր մի մատով: Չէր էլ պայքարում՝ պայքարի կողքով անցնում և հաղթում էր: Պարարտ, հզոր քաշով, փեշերը ծանրումեծ թափահարելով, դուռ ու դրկիցի, ծանոթի ու խոսք տանող-բերողի մոտ լաց էր լինում փոքրիկի որբ բախտի համար ու բախտի վըրա, նրան սիրում, կուշտ, յուղալի կերցնում, մաքուր, տաք, սիրուն հագցնում՝ հեռու-մոտիկի կարծիքի համար, և պնդում, որ օր-օրի իր երեխան կդառնի, իր հոգու հատորը, իր հարազատ կեսը, վաղը իրեն գլխի վրա պահող ապավենը: Եվ դա կանի մատ-մատից արյուն խառնելու ճանապարհով: Այդ հիմնական գաղափարը բարձրաձայն չէր ասում, բայց արյունախառնուրդի հարցը վճռված էր: Վճռել էր փոքրիկին փրկել հոգու գյավուրության չարչարանքներից. մեղք է երեխան: Ու վերջ: Ու փոքրիկն այլևս չի հիշելու անիծյալ երկվությանն ընդդեմ նահատակված հոր ձայնը, որը, սակայն, արյան հետ, օտարից ծածուկ, միշտ վերադարձվում էր, դառնում հայացք, պատկեր, պայքար, ճակատագիր: Փոքրիկն արյան խնդրի շուրջը երկար չմտածեց:



Որպես երեխա՝ շատ մտածելու պարտք ու պահանջ էլ չուներ, և, որպես երեխա, կամեցավ բարի սիրտ ունենալ, կամեցավ իրեն անուշ ու հաշտ տեսնել մերացվի կողքին, կամեցավ արյան անհաշտություններից մղկտացող հիշողությանը և ինքն իրեն լավություն անել՝ խաղաղություն փնտրելով. մերացվի փեշի հետ վազելով կամավոր հյուր եղավ նրա արյունակիցներին: Հենց այդ ճամփորդությամբ էլ ճշգրտվեց երկվությունը, որ հոր կյանքն էլ էր կերել: Մերացվի արյունակիցներն էին տարբեր: Լեզուն՝ տարբեր: Հայացքները, նիստուկացը, հագուկապը՝ տարբեր: Եվ այդ ամենի հետ մի տեսակ քաղցրմեղցրություն կար, որ հնարավոր չէր մարսել: Մերժելի տեսակ էր. օտար և անմերձենալի, մութ և չար, կպչուն և անհուշ: Նրանց տեսության գնացին սայլով, ոտքով, անտառներով, կածաններով: Զարմանալի, տարօրինակ, հակակշիռ առավոտներ ու գիշերներ եկան-անցան, փոքրիկի վտիտ մարմինը ներծծվեց արեգակներով ու քամիներով, աչքերն աշխարհից էլի պատկերներ ու կյանքի ծավալուն շարժումը ներառան՝ հոգու աճի համար, օտարի հոտն էլ իր ուղեկից կարգով ծանրացավ, խտացավ, խորացավ աշխարհի մեջ: Հոտն ահագնացավ ու փոքրիկին տրորեց: Առավոտից առավոտ ավելի շատ, ավելի լկտի՝ կատաղած շուն դարձավ ու ոխակալ հաչեց, արնախում կրծեց շղթան... Բայց նախնյաց արյունը քայլում, ապրում, կըռվում էր՝ փոքրիկին թիկունք-պահապան կտրած, ինքն էլ նրա հետ գոյանալով ու նրա երակներում ազնվազարմ շառաչելով:

Մերացվի երկվության ավելորդ երաշխիքը խշխշան փեշերով ցեղի մի տեսակն էր: Այդ, երևի բուն տեսակը, մանրամասն խորացավ փոքրիկի աչքերի մեջ ու փըսփըսաց.

— Ամա՞ն, գյավուր:

— Հա, բա՝ գյավուր,— պատմում էր մերացուն:— Կատաղած շուն է... Արի հաց կեր, գա՛ն ջան,— բարձրաձայնեց:

Փոքրիկը հեռու պատուհանի մոտ նըստել ու եղունգներով ապակու հաստ ճենճըն էր քերում, որ դուրսը տեսնի: Հացի կանչերը լուռ պնդությամբ մերժելով՝ քերեց և ապակու այն կողմում, հենց պատուհանի տակ, բացօթյա արտաքնոց հայտնաբերեց: Այդտեղ հաստամարմին մի աղջնակ էր նստած: Չորս կողմում

հավերը քուջուջ էին անում։
— Արի հաց կեր, է՛,—ջղայնացավ մերացուն։
Բայց փոքրիկը զզվում էր։ Կարծես իրեն ոչ թե հաց, այլ ուրիշ բան էին առաջարկում ուտել։
— Ամա՜ն, աչքերը գյավուրի աչքեր են, հոգին գյավուրի հոգի է,— փսփսաց մերացվի կողմը։
Իսկ փոքրիկի սիրտը պայթում էր հատկապես իրիկվա՝ հանգող արեգակի տեսքից, քանզի արեգակն էլ որ գնար, ինքը մնալու էր որպես այս աշխարհի ամենա-ամենաորբը։ Աստված ջան, այնպես արա, որ մութը չընկնի, հրաշքի սպասումով աղաչեց։ Մի մարդ ներս մտավ։ Մերացուն իր կողմի հետ ջանասեր ոտքի ելավ ու խոնարհ առավ նրա բարևը։ Մարդըն անցավ փոքրիկի կողքով և կարծես չտեսավ էլ, բայց տեսել էր՝ ետ դառնալուց կողքը բզեց.
— Հը՛, շան թուլա, ո՞նց ես։
Փոքրիկն արդեն մեռնում էր, բայց նախնյաց արյունը կար՝ պահապան հրբեշտակ էր, Մայր Աստվածածին էր ու կանչում էր։ Անուո՜ւշ, զուլա՜լ կանչում էր։ Փոքրիկն ուղղվեց, կանչից ունկընդիր՝ սրտոտ նայեց արդեն հացի նըստող այդ մարդուն և ասաց.
— Լավ եմ։
— Գյավուր,— մրթմրթաց մարդը։
Փոքրիկը «գյավուրը» չէր հասկանում։ Աստված ջան, ինձ մեր տուն տար, աղաչեց։
— Հաց չի ուտում,— տրտնջաց մերացուն։
— Քեզ ո՞վ էր խնդրել, որ դրան հետդ բերեիր,— նկատեց մարդը։
— Արյունը խառնի քեզ, որ գյավուրը միջից ելնի,— խորհուրդ տվեցին մյուսները։
— Գիտեմ, անելու եմ,— տեղեկացրեց մերացուն։
Փոքրիկն աթոռի վրա ձգվեց, պրկվեց ու առաջին անգամ ինքն իրեն պատվիրեց՝ չէ՛։
— Մի անկյուն տվեք, թող պառկի,— հացը բերանում՝ ասաց մարդը։
Փոքրիկն ասաց՝ չէ՛։
— Ամա՜ն,— խորշեց մերացվի կողմը։
— Անտեր շունը խելա՞ռ է, է՛լ, ուրիշի տանն ինձ խայտառակ չանես՝ ել շընթռի,— մատ թափ տալով քղավեց մերացուն։
— Չէ,— պնդեց փոքրիկը։
— Չո՛ռ, էլ ինչի՞ ես կատաղել,— չարացավ մերացուն։
— Ինձ մեր տուն տար,— խնդրեց փոքրիկը։
Մտքում հաստատ որոշեց՝ կփախչի։
Ներլցվող արյունն հանկարծ ուժգին խաղաց։ Այդ՝ նախնյաց արյունը, լեռներից, անդունդներից, Եփրատներից, անապատներից, քարափներից, Բոսֆորներից, տափաստաններից, հեռու աշխարհներից ելման եկավ ու մարմանդ ներհունելով ձայն տվեց։ Ասաց՝ չվախենաս։ Բայց փոքրիկը դեռ վախենում էր օտարի հոտից։ Աղոտ հիշում էր, թե ինչպես ձմռան մի գիշեր հայրը մարդ էր բերել տուն։ Դրսում՝ պատի տակ պիտի մնար, բայց հայրը տեսել ու տուն էր կանչել։ Հայրը որ կար, ասում էր՝ մարդու օրենքն այդպիսին է. ճամփորդին պատի տակ չթողնել և անցորդի ետևից քար չշպրտել։ Մերացուն լվաց հյուրի ոտքերը։ Մերացուն հոր ոտքերն էլ էր լվանում, սակայն փոքրիկը շատ զարմացավ, երբ նա օտարի ոտքերն էլ լվաց։ Հետո, երբ հայհոյքն ընկավ ու սարերում կանաչը ծլեց, հայրը ցորենի սերմացու տարավ հյուրի թողած հասցեով։ Երեք օր չդրացած՝ ետ եկավ փոշոտ, թալանված, վիրավոր։ Կարծես ծերացել էր։ Նրան այդ վիճակում տեսնելով՝ մերացուն ծնկները ծեծեց։ Վա՜խ, ասաց, ի՞նչ օրի ես, մարդ։ Հետո էլ թե՝ բա մեր ծանոթը տիրություն չարե՞ց։ Արեց, շատ լավ տիրություն արեց, ցորենն ու փողերը իրեն մնացին, իսկ ինձ ու քեզ՝ կյանքըս՝ նվեր։ Ամա՜ն, այ մարդ, բա մենք իրեն չընդունեցի՞նք, բա ես իր ոտքերը չլվացի՞։ Լվացիր, բայց ջուրը խմելը մոռացար։ Եվ հայրը լռեց շաբաթներ ու մշտական՝ մինչև սրտի պայթելը։ Այդ անգամ նրա լռելը նշանակում էր, թե ներսում մարդկային տեսակների վերաբերյալ ինչ-որ ջահ էր փշրվել, պայծառ մի լույս էր հանգել՝ արդեն հավիտյան։
— Ինձ մեր տուն տար,— խուսափելով մերացվի աչքերին նայել, իր աղաչանքը կրկնեց փոքրիկը։
— Ի՞նչ տուն, գիշերով տուն չկա, գըլխի՛դ խռով մնա տունը,— պայթեց մերացուն։
Հացից կշտացած մարդը ոտքի ելավ.
— Դրան մի կողմի վրա ռադ արեք՝ աչքիս չերևա,— մոլտաց։
— Սև՛ լինեիր, սև՛ գայիր,— անիծեց մերացուն։

—Ես դրա պտուղը,— հայհոյեց մարդը:— Տարեք գցեք իր ցեղի պատի տակ,— կարգադրեց:

Փոքրիկն ատելությամբ նայեց նրան և ինչ-որ բան մրմնջաց: Վախենում էր, բայց էլ չէր ուզում վախենալ, որովհետև առաջին անգամ պարզորոշ զգում էր. ինքը հաղթում է: Եթե չհաղթի, ուրեմն մեռնելու է:

Հայի կինը եկավ դրսի դռան մոտ ըսպասեց, մինչև փոքրիկին դուրս տարան:

— Քոռանամ,— իրենց տանը փղձկաց հայի կինը:

Փոքրիկը նրա լացից էլ էր տան բույր առնում: Իմ մորը նման է, մտածեց: Հայի տնեցիների գողտոց լացի ուղեկցությամբ սեղան նստեց ու կուշտ կերավ: Ապա քընեց՝ երազում մորն հանդիպելու աղերսանքը շուրթերին, և մայրն անմիջապես եկավ՝ դալկադեմ, կապտաչ ու երկարավարս՝ ինչպես փոքրիկը պատկերացնում էր: Առավոտ մերացվի հետ ճամփա ընկան: Մերացուն պարտված էր ձևանում: Անիծում էր: Տանը հանկարծ անուշ հոգի դարձավ. փոքրիկին գովեց, փառաբանեց, հասցրեց երկինք: Փոքրիկն այդ խաղի մեջ առնվել ու սպասում էր արյունխառնուրդի օրվան: Այդ օրվանից սկսած և այնուհետև նա ժամանակ առ ժամանակ զգում էր, որ մի բան կա՝ իր ապրելուն խանգարող, որ հետո մեռնելուն էլ պիտի խանգարեր:

Ծոգ օգոստոսր բոլորին գլխիվայր գետըն էր թափում: Փոքրիկն էլ ճամփա ընկավ, թեև մերացուն հրապարակավ մղկտում էր՝ ամա՛ն, կմրսես, ամա՛ն, ջուրը քեզ կքշի… Իհարկե, չլսեց ու գընաց: Գյուղից ելավ, արահետներով, աղբյուրներով, կարմիր ճահիճներով, ուռուտներով մոտեցավ աղմկոտ գետին: Հոգին թեև ծանր, բայց քաշը թեթև տըղա էր՝ հեշտ էր գնում, մանավանդ, փողոցային կռիվներում կոփված, ընկնել-ելնելու շեմը համբուրած, արդեն գրաճանաչ ու պինդ երազող տղա՝ անդուլ երազելով նստեց ճահիճների սահմանագըլխին: Ձեռքը երկարելով փորձեց արմատից պոկել ճահճախոտի հաստ ցողունը, բայց չզորեց: Ելավ տեղից, ու կպան իրար: Ցողունը երկու անգամ բարձր էր փոքրիկից, բայց սա էլ համառ էր: Անսպասելի սուր հոտից շնչառությունը ծանրացավ: Այն նույն հոտը, որ հալածելով ծանրանում էր իր աշխարհի վրա: Այդ հոտը ճահիճը բռնեց: Արդեն հաղթանակների վարժվող փոքրիկը, արմատախիլ ցողունը թմբին նետելով, դուրս ելավ ճահճից: Քիթը բռնելու ժամանակ նկատեց, որ մատներից արյուն է հոսում: Ձախ ցուցամատի բարձիկը լայնքով ու խորը ճեղքված էր: Արյունը բռով էր թափվում: Սակայն արյուն չէր: Բորբոսնած, բուռ-բուռ թափվող, կարմիր, լպրծուն հեղուկ էր: Փոքրիկը խաղաղությամբ զգում էր, թե ինչպես իր միջից հեռանում է իր կյանքին ու իր մահին խանգարող այն մի բանը: Եվ առաջին անգամ զգաց նախնյաց արյան ջերմեռանդ խուժումը երակների ու սրտի մեջ: Դարերով թափված արյունը վերադառնում, ճնշելով ու հալածելով քշում էր, ցուցամատի ճեղքից դուրս շպրտում օտարը: Եվ ներլցվում էր ինքը՝ հարազատը, ազնվազարմը: Փոքրիկը ոտքի ելավ: Հաղթող էր, բայց հանկարծ, որպես արդար ու սուրբ երեխա, աղերսանքով մոր գիրկ ուզեց, որ գլուխն այնտեղ՝ դրախտում թաղած, լա: Սակայն իր հաղթանակը լուռ, մարմանդ, անգիրկ լացով մեռնվեց ու աստվածացավ մինչև տուն: Այն տունը, որ հայրն էր կառուցել, բայց հայրը չէր ապրում: Այն տունը, որի շնչառությունն արգելակվում էր օտարի ներկայությունից, այդ ներկայության սարսուռից, այդ սարսուռի պաղությունից, այդ պաղության օձությունից:

Փոքրիկի ապրելուն ուղեկից ժամանակը, որ առավոտից առավոտ ու ծագից ծագ բյուր հազար տարի ծաղկայույս էր բուրել, միաժամանակ էլ շնչահեղձ լինելով օտարի հոտից, արդեն ազատագրվելուն էր երկրպագու, բայց փոքրիկն ավելի շուտ էր երկրպագու և առաջինն ազատագրվեց: Բյուր հազար տարի անց շնչեց մեծ ազատագրության բույրը և, հաջորդ առավոտ, սովորականի պես լուսաբացին արթնանալով, կիսամերկ կանգնեց մահճակալի վրա, պատից իջեցրեց հոր հրացանը, որ այլևս հոր հրացան չպիտի լիներ, այլ՝ ընդդեմ հոր և իր ճակատագրի:

Հրացանի փողը վեր պարզեց՝ ինչպես շեփոր, և սեղմեց ձգանը: Աստծո կամոք հրացանը շեփորեց: Մարդիկ վրա հասան այն պահին, երբ մերացուն՝ սառած-սարսափած, մարմրելով նայում էր փոքրիկին, իսկ հմայված փոքրիկը առաստաղին բացված կապույտ խորանով նայում էր երկինք, որտեղ նախնյաց երակներից Արաքսներով թափված արյան տունդարձի շաղոտ, ծիսական արշալույսըն էր ծավալվում երկներկիր…



ԱՐՏՕ ՉԱՔՄԱՔՉՅԱՆ. «Մոր դիմաքանդակը»:

## «ՊԻՈՆԵՐ» № 7-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱ ՏԱՍԽԱՆԸ

1. Արմավիր: 2. Արքունիք: 3. Վաղարշապատ: 4. Վահան: 5. Հաոիճ: 6. Սասուն: 7. Հացեկաց: 8. Մագաղաթ: 9. Քուչակ: 10. Մենուա: 11. Խորան: 12. Ուրմիա: 13. Մոմիկ: 14. Արցախ: 15. Նարեկ: 16. Գագիկ: 17. Վանատուր: 18. Սանասար: 19. Խաչեն: 20. Տարոն: 21. Ջաջուռ: 22. Դավիթ: 23. Կեչառիս: 24. Մեծամոր:

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆԶՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա.:

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.